# ՑՈՒՑԱԿ

## ՀԱՅԵՐԷՆ ՁԵՌԱԳՐԱՑ

### Ի ԹՈՒՐՔԻԱ

# CATALOGUE

DES

## MANUSCRITS ARMÉNIENS

EN

TURQUIE

ՏՊԱՐԱՆ, ՎԻՄԱԳՐԱՏՈՒՆ, ԿԱԶՄԱՏՈՒՆ ԵՒ ԳՐԱՏՈՒՆ

**Գ. ՊԱՂՏԱՏԼԵԱՆ**

*14 Սուլթան համամ ճատտէսի, Կ. Պոլիս 14.*

---

TYPOGRAPHIE, LITHOGRAPHIE, LIBRAIRIE & RELIURE

**K. BAGDADLIAN**

*14 Rue Soultan Hamam, Constantinople 14*

معارف نظارت جليله‌سنك رخصتيله طبع اولنمشدر

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ

ԿԵՍԱՐԻՈՅ Ս. ԿԱՐԱՊԵՏԻ ՎԱՆՈՒՑ ԺԱՌԱՆԳԱՒՈՐԱՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ

# ՑՈՒՑԱԿ ՀԱՅԵՐԷՆ ՁԵՌԱԳՐԱՑ

## Ի ԹՈՒՐՔԻԱ

### ՀԱՏՈՐ Ա.

### Կեսարիոյ վիճակ




ՑՈՒՑԱԿ ՀԱՅԵՐԷՆ ՁԵՌԱԳՐԱՑ ՍՈՒՐԲ ՍԱՐԳՍԻ ՎԱՆՈՒՑ Ի ԿԵՍԱՐԻԱ


ԿԱԶՄԵՑ

ՏՐԴԱՏ ՎՐԴ. ՊԱԼԵԱՆ

ԱՌԱՋՆՈՐԴ ՀԱՅՈՑ ԿԵՍԱՐԻՈՅ





ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐ. ԵՒ ՎԻՄԱԳՐ. Գ. ՊԱՂՏԱՏԼԵԱՆ

*14, Սուլթան Համամ ճատտէսի 14.*

1892

# Ցուցակ Հայերէն Ձեռագրաց

## ՍՈՒՐԲ ՍԱՐԳՍԻ ՎԱՆՈՒՑ ( ՏԷՐԷՎԱՆՈՒՑ ) Ի ԿԵՍԱՐԻԱ

# Catalogue des Manuscrits Arméniens

DU

## MONASTÈRE ARMÉNIEN St. SARKIS

A

## CÉSARÉE

# ՆԱԽԱԲԱՆ

Երբ 1887 թուականին, Կեսարիոյ վիճակին Առաջնորդական պաշտօնն խոնարհաբար ստանձնեցինք, 'ի միջի այլոց մտադրութիւն մ'ունեցանք նաեւ, նոյն վիճակին թէ՛ Վանօրէից, թէ՛ Ս. Եկեղեցեաց Մատենադարանաց մէջ, եւ թէ՛ անհատից մօտ գտնուած բոլոր Հայերէն Ձեռագիր մատենից մի ցուցակն կազմաւորել կանոնաւորապէս, ըստ արդի պահանջման, մանրամասն տեղեկութեամբ եւ հանդերձ յիշատակարանօք, մտադրութիւն մը՝ որ 'ի գործ կը դնէինք նոյն թուականէն 'ի վեր, երբ առիթէն կ'օգտուէինք:

Մեր կազմաւորած սոյն հաւաքածոյ ցուցակին մէջէն, մի քանի մասնաւոր մասերն, *«Թեմորայք Կեսարիոյ եւ Հայերէն Ձեռագիրք»* խորագրով թէեւ անցեալ տարի պարբերաբար հրատարակութեան տուինք 'ի լրագիրս, եւ սակայն պէտք է ըսենք, թէ բուն իսկ մեր առաջադրութիւնն եւ նպատակն այդ չ'էր; այլ յարմար ժամանակին եւ առիթին, ուղղակի տետր առ տետր առանձինն հրատարակել ամբողջ հատոր մը կազմելու համար:

Ըստ առաջադրութեան մերոյ, այս անգամ 'ի լոյս կընծայեմք, մեր հաւաքածոյ ցուցակին Ա. Տետրն, յուսալով, թէ մեր այս աշխատութիւնն, թէեւ յիրաւի՝ ըստ երեւոյթին չնչին, այլ՝ յուսով եմք թէ ամբողջ բանասիրաց համակրութեան եւ ուշադրութեան պիտի արժանանայ, այս յոյսն ունինք, եւ այս յուսով, կը կրկնե՛նք թէ, եթէ հաճոյալի լինի մեր սոյն աշխատութիւնն, եւ եթէ չի վնասուինք նիւթապէս, հետզհետէ հրատարակութեան պիտի տանք միւս Տետրներն եւս՝ գրեթէ թուով 14, որք կազմ եւ պատրաստ են:

Ուրախալի երեւոյթ մ'է, որ Վիեննայի Մխիթարեան Պատուարժան Միաբանութիւնն եւս սկսած է, արդէն 'ի լոյս ընծայել Եւրոպական գլխաւոր Մատենադարաններու եւ այլն, Հայերէն Ձեռագրաց կանոնաւոր ցուցակներն առանձինն Տետրներով, այսու ամենայնիւ, ո՞րչափ եւս առաւել ուրախական եւ հաճոյական պիտի լինէր, եթէ 'ի Թուրքիա այլ վիճակաց Ազգ. Վանօրէից, Ս. Եկեղեցեաց, Հաստատութեանց, եւ մասնաւորապէս Ս. Էջմիածնայ եւ Ս. Երուսաղէմի, մանաւանդ Վիեննայի եւ Վենետիկի Մատենադարաններու հաւաքածոյ մեծաքանակ Ձեռագրաց ցուցակներն որք շատ կարեւոր կը համարինք, հրատարակուէր, վերոյիշեալ հատորներու հետ *«Հայերէն Ձեռագրաց ընդհանուր Մայր ցուցակ»* մը կազմելու համար, որոյ պէտքն եւ օգտակարութիւնն արդէն անուրանալի է:

Այսպիսի առաջարկութիւնք արդէն քանի'ցս եղած են բազմաց կողմանէ, մերինս կրկնում մ'է միայն, եւ սակայն ինչպէս բազում բանասէրք, նոյնպէս մենք, անձկանօք եւ փափաքանօք կ'սպասենք նորա իրագործման:

Մեր սոյն աշխատութեան խորագիր դրած ենք, *«Ցուցակ Հայերէն Ձեռագրաց 'ի Թուրքիա»*: Կեսարիոյ վիճա'կին ամբողջ Ձեռագիրք Ա. Հատորն պիտի կազմեն 15 Տետրներէ բաղկացեալ: Պիտի աշխատինք, եթէ կարողանանք եւ եթէ ժամանակ ունենանք, միւս Վիճակներն եւ Վանքերն ալ պտտիլ եւ ձեռագիրներն պրպտել ցուցակագրութեան համար եւ առանձինն հատորներով հրատարակել. հետեւաբար չի մոռանանք ըսելու թէ, այս հաւաքածոյ ցուցակաց յաջորդ Տետրներն աւելի կանոնաւոր կազմաւորեալ դուրս տալու համար, կը խնդրենք ամէն բանասէրներէն, որք եթէ ունին դիտողութիւն մը, պատրաստ եմք ամենայն հաճութեամբ եւ շնորհակալութեամբ ընդունիլ, ուստի կը յանձնեմք մեր սոյն գործն իրենց ուշադրութեան:

*Առաջնորդ Հայոց Կեսարիոյ*

ՏՐԴԱՏ ՎԱՐԴԱՊԵՏ ՊԱԼԵԱՆ

# ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԱԽՏԱԿ ՁԵՌԱԳՐՈՑ

| ԹԻՒ | ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ | ՆԻՒԹ | ԹԵՐԹ | ՄԵԾՈՒԹԻՒՆ | ԳԻՐ | ԹՈՒԱԿԱՆ | ՏԵՂԻ | ԳՐԻՉ | ՏԷՐ |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աւետարան | Թուղթ | 278 | 27,5×18 | Բոլոր գիր | 1206 | Ս. Կարապետի Վանք Կեսարու | Գրիգոր Քահանայ | Խըտըրպալի |
| 2 | Աւետարան | » | 287 | 26,×18 | » | 1480 | Անծանօթ | Ստեփաննոս Եպիսկոպոս | Գրիգորիս Սարկաւագ |
| 3 | Ճաշակնոց | » | 301 | 21×15 | » | 1638 | Տումարզայի Վանք | Բարսեղ Քահանայ | Գրիչն |
| 4 | Մաշտոց ձեռնադրութեան | » | 84 | 21,5×16 | Նօտր գիր | չունի | Անծանօթ | Սարգիս Դպիր | Գուցէ գրիչն |
| 5 | Եօթնաձայն փող | » | 134 | 20,5×15,5 | » | 1834 | Ի Վանս Ս. Կարապետի Կեսարու | Կարապետ Վրդ. Թուրպալեան | Գրիչն |
| 6 | Սաղմոս | » | 242 | 10×7,5 | » | 1670 | Ի Նիկդէ | Գրիգոր Կոզանցի | » |
| 7 | Տրամաբանութիւն | » | 83 | 22×16 | » | 1759 | Անծանօթ | Անծանօթ | Սարգիս Վրդպ. Բալուցի |
| 8 | Ճաշոց գիրք | » | 409 | 41×27 | Բոլոր գիր | չունի | » | Գէորգ | Անծանօթ |
| 9 | Քերականութիւն Բ. | » | 201 | 15×10 | » | 1774 | Գերմանիկ | Յովհաննէս | Գրիչն |
| 10 | Մաշտոց | » | 200 | 15×10 | » | չունի | Անծանօթ | Անծանօթ | Անծանօթ |
| 11 | Դամբարան | » | 227 | 18×13,5 | » | » | » | » | » |
| 12 | Կոնդակ մի | » | — | 76×47,5 | Նօտր գիր | 1838 | Ս. Դանիէլի Վանք | Կարապետ Եպիսկոպոս | Գրիչն |

# ՑՈՒՑԱԿ ՀԱՅԵՐԷՆ ՁԵՌԱԳՐԱՑ

## Ս. ՍԱՐԳՍԻ ՎԱՆՈՒՑ (ՏԻՐԻՆՎԱՆՈՒՑ) Ի ԿԵՍԱՐԻԱ

### 1.

### ԱՒԵՏԱՐԱՆ

**ՈԾԵ=1206**

*ԿԱԶՄ հին աւետեան, տախտակեայ կաշէպատ. ՆԻՒԹ Թուղթ փամփակեայ, ողորկեալ. ԹՈՒՂԹ* 278 *կամ* 556 *էջք. ՄԵԾՈՒԹԻՒՆ* 27.5×18 *հարիւրորդամէտր. ԳԻՐ մաքուր բոլորագիր. ԳՐՈՒԹԻՒՆ երկսիւնակ* 19×12 *հրմ. սիւնակաց միջեւ եղած պարապ միջոցն է* 1.5 *հրմ. ՏՈՂՔ* 19. *ՊԱՏԱՐԿ Թղ.* 216բ. *ՊԱԿԱՍ Թղ.* 1, *միրասուած. ԽՈՐԱՆՔ Թուով* 3. (*Մատթէոսինը կը պակսի*) *Թղ.* 82ա, 132ա, 217ա. *ԶԱՐԴԱԳԻՐՔ են ամէն գլխոց սկզբնագրերն. ԳԼԽԱԳԻՐՔ կարմրաւ են. ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ Թուով* 199. *ՀԱՆԳԱՄԱՆՔ մաքուր պահուած է. ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ Թղ.* 278. *ԳՐԻՉ Տ. Գրիգոր Քահանայ. ՏԵՂԻ ի Վանս Սրբոյն Յովհաննու Կարապետի Կեսարու. ԺԱՄԱՆԱԿ գրութեան ՈԾԵ.* (=1206). *ՏԷՐ Խըտըր Գալի. ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ, Ա. Մատենիս սկիզբն Մագաղաթեայ երկու Թերթեր կան երկաթագիր. Աւետարանի հատուածք, եւ վերջն ալ մի հատուած Թուղթ. Մագաղաթեայ Թերթերուն վրայ յիշատակարան մը կայ հին բոլորագիր.*

**Մասնանիս է ԱՒԵՏԱՐԱՆՍ:**

1. **Թղք.** 2ա—81բ, **Աւետարան Մատթէոսի, (Առաջին թղ. միրասուած).**
2. **Թղք.** 82ա—131բ, **Աւետարան Մարկոսի, — «Սկիզբն» Թուչնագիր.**
3. **Թղք.** 132ա—216ա, **Աւետարան Ղուկասու, — «Քանզի» Թուչնագիր.**
4. **Թղք.** 217ա—277բ, **Աւետարան Յովհաննու, — «Ի սկզբանն» Թուչնագիր.**

**ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ**

1 **Թղ.** 278ա, (*Գլխաւոր յիշատակարան*) **— «Փառք ... Գրեցաւ եւ ծաղկեցաւ Ածաբուղխ Սբ Աւետարանս Քսի, ձեռամբ բազմամեղ եւ փցուն անիմաստ եւ յանցաւոր գրչի Գրիգոր Քահիս ի Տումարծու, որ անուամբ գոյիւ եւ ոչ գործովք. ի Թուականիս Հայոց ՈԾԵ** (=1206) **յաւարտեցաւ Յունվար ամսոյ Գ. աւր Շաբաթ, ի դաւառս Կեսարիոյ Կապադովկեցւոց ի հոչակաւոր անապատիս Սրբոյն Կարապետի Յովհաննու, եւ սրբոյն Ստեփաննոսի Նախավկային, եւ սրբոյն Թէոդորոսի եւ սրբոյն Մերկերիոսի զինաւորի, եւ այլ բազմահաւաք սրբութեանցս, ի յեպիսկոպոսութեան** (*յետ այսորիկ գրիչն կը փոխուի*) **Տէր Ազարիա վերայ տեսչի որոյ ցանկացող եղեալ այս փրկաւոր Սբ Աւետարանիս զհեզահոգի եւ զհաւատարիմ ծերունին զԱըտըրպային եւ զիւր կողակից զԿուշասարն որ փոխեալ է ի Քս, եւ ամենայն արեան մերձաւորքն իւր, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զԱտր-պայինն որ ստացաւ զՍբ Աւետարանս եւ յետ յիշատակ ի վանս սրբոյն Գրի(գ)որի Նիւսացւոյն որ է եղբայր սրբոյն Բարսեղայ հայրապետին. Արդ մի ոք իշխեսցէ հանել զսա ի դըրանէ սորին, եթէ անզգնի զպատիժն կայենի առցէ եւ զմասն ուդայի եւ զՔրիստոս խաչահանողացն առէն. Եղիցի Եղիցի, Հայր մեր որ յերկինս ար. եղ.»**

2. (*Սկզբի մագաղաթեայ թերթերուն վրայ հին բոլորագիր*). **— Ո՛վ Քաղցր դաւք Քահանայից, որք հանդիպիք այսմ Ածաձայն քնարին եւ Ածային զանձան չտեմարանիս, յիշեցիք ի Սբ յաղաւթս ձեր ...** (*սրբուած էր անունն*) **եւ զծնողսն իւր եւ զորդին որ ետ վերստին կազմել զսա յարգար վաստակոց իւրոց, յիշատակ իւր եւ ծնողաց իւրոց, որոց ողորմեսցի նոցա Քս Ած յաւուրն անհրեկի, յիշեսցիք ի Տէր եւ զորբասէր Քահանան ...** (*սրբուած էր անունը*) **որ աւժանդակ եղեւ սմա, յիշողացդ ողորմեսցի Քս.»**

Տումարծու գիւղն եւ վանքն է 'ի Կեսարիա, ութ ժամ հեռաւորութեամբ, մօտ Տաւրոս լերանց եւ Զամանթու (= ԾԱՄԸՆԴԱԻ) գետի. Ինչպէս գաւառով առաջ նոյնպէս չէն է այժմ վանքն, ունի միաբանութիւն, մի Վանահայր եւ երեք Վարդապետք. Տումարծու, երբեմն նաեւ Տումարզա, այժմ ընդհանրապէս կը հնչուի Թօմարզա, ուր եւ գրեթէ քառասուն եւ հնգի չափ այլ գիւղօրայք, կը կազմեն Կեօւ-քերքի գաւառակն, այսինքն է՝ ԿԻԶԻՍՏՐԷ. Սրբոյն Յովհաննու Կարապետի եւ Սրբոյն Գրիգորի Նիւսացւոյ Վանուց վրայ ծանօթութիւնք այլ աւթիւ պիտի գրուին, երբ հրատարակութեան առնք Ս. Կարապետի Վանուց Մատենադարանի Ձեռագրաց ցուցակն.

## 2.

## ԱՒԵՏԱՐԱՆ

### ՋԻԹ=1480

ԿԱԶՄ հին արեւելեան, տախտակեայ կաշէպատ. ՆԻՒԹ Թուղթ փամփակեայ ողորկեալ. ԹՈՒՂԹ 287 կամ 574 էջք. ՄԵԾՈՒԹԻՒՆ 26×18 հարիւրորդամէթր. ԳԻՐ մաքուր բոլորագիր. ԳՐՈՒԹԻՒՆ երկսիւնակ 18×11,5 հրմ. սիւնակաց միջեւ եղած դատարկ միջոցն է 1,25 հրմ. ՏՈՂՔ 22—23. ԴԱՏԱՐԿ Թղ. 287բ. ՀԱՆԳԱՄԱՆՔ մաքուր պահուած է. ԽՈՐԱՆՔ Թուով 4. Թղ. 1ա, 85ա, 136ա, 218ա. ԶԱՐԴԱԳԻՐՔ ԵՒ ԹՌՉՆԱԳԻՐՔ են ամէն գլխոց սկզբնագրերն. ԳԼԽԱԳԻՐՔ կարմրաւ. ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ Թուով 204. ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ, Թղթք. 84բ, 134ա, 217ա, 285ա, 286բ, 287ա. ԺԱՄԱՆԱԿ գրութեան ՋԻԹ (=1480). ԳՐԻՉ Ստեփաննոս Եպիսկոպոս. ՏԵՂԻ անծանօթ. ՏԷՐ գրչին, 'ի յիշատակ իւր սարկաւագին Գրիգորիսի. ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ, Մատենիս վերջն մագաղաթեայ երկու թերթեր կան երկաթագիր գրուած, Աւետարանի հատածք.

Խորանք, զարդագիրք, թռչնագիրք, լուսանցազարդք ճաշակաւոր լաւ գործեր են եւ արուեստիւ շինուած.

**Մասունք է ԱՒԵՏԱՐԱՆ:**

1. Թղ. 1ա—84ա, Մատթէոսի Աւետարան, — «Գիրք ԾՆ.» Զարդագիր.
2. Թղ. 84ա—84բ, Նախադրութիւն Մարկոսի Աւետարանին.
3. Թղ. 85ա—133ա, Մարկոսի Աւետարան, — «Սկիզբն Աւ.» Զարդագիր.
4. Թղ. 133բ—134ա, Նախադրութիւն Ղուկասու Աւետարանին.
5. Թղ. 134բ—135բ, —Սկիզբն գլխոց որ ըստ Ղուկաս.
6. Թղ. 136ա—217ա, Ղուկասու Աւետարան, —«Քանզի» Զարդագիր.
7. Թղ. 217բ, Նախադրութիւն Յովհաննու Աւետարանին.
8. Թղ. 218ա—279բ, Յովհաննու Աւետարան, — «Ի սկզբանէ» Զարդագիր.
9. Թղ. 280ա—285ա, Հանգիստ երանելւոյն Յովհաննու Աւետարանչի.

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ

1. Թղ. 84բ, (Ի վերջն Մատթէոսի Աւետարանին՝ այլ գրիչ). — «Զվերջին ստացող Սբ Աւետարանիս զՅուհան զԶաքարն եւ զեղբայրն իւր զՍաֆարն, եւ զհայրն իւրեանց զՆիկողայոսն, եւ զմայրն Մուղայն եւ այլ ամենայն ազգականաց իւրեանց, ստացան եւ եդին յիշատակ ի Կեսարիա ի վանքն որ կոչի Սբ Սարգիս, յի բերանով Ած ողորմի ասացէք ստացողաց եւ աշխատողաց սորա, ամէն, Հայր մեր որ . . . Գրեցաւ ի թուին ՌՀԲ (=1623).»

2. Թղ. 134ա, (Ի վերջն Մարկոսի Աւետարանին՝ այլ գրիչ). — «Զվերջին կազմող Սբ Աւետարանիս ըզմեղաւք զառածեալ զերես զԱյեփանոս Սարկաւագըն յիշեցէք ի Քս եւ Ած ողորմի ասացէք լի եւ առատ սրտիւ. Խնդ եւ իմ աշակերտացս Սարգիս Դպրի եւ Աստուածատրի որ բազում աշխատելով ըզթուխթս կոկեցին ամէն, ՌԾԱ (=1602) ին կազմ(ե)ցաւ.»

3. Թղ. 217ա, (Ի վերջն Ղուկասու Աւետարանին՝ այլ գրիչ). — «Զվերջին ստացող Ածազարդ բուրաստանիս ըզՊաղչի Թոռոյն զՏատուրի որդին զՅուանայ Սարգիսն որ իւր հալալ արդեանցըն գնեց եւ եդիր յիշատակ ի դուռն Սբ Ածածնին ի Մարզըւան գիւղաքաղաքն, ով որ ընթեռնու կարդալով կամ աւ-

բննակելով, յիշեսջիք ի Քս զՅուհան Սարգիսըն եւ ըզնորա բողբոջ ծաղկեալ որդոցն յեսայի Սարկաւագին եւ Ցովանէսին, եւ կողակցին իւր Նազլուին եւ դստերացն Եաղութին եւ Զումրութին եւ Մարաֆին եւ առ Ած փոխեալ դստերին իւր Շահզատային եւ առ Ած փոխեալ եղբարցն Փանոսին ըզՂալային զՆուրպակին եւ քրոջն Մարիամին եւ զՄալաֆին եւ առ Ած փոխեալ Սառային զհայրն Տասուրն եւ զմայրն Շահպուլային եւ զամենայն արեան մերձաւորս յիշեսջիք ի Քս, ով որ յիշէ եւ Ած ողորմի ասէ Ած զիւր մեղքըն չիշէ, ամէն։»

4. Թղ. 285ա—286բ, (Գլխաւոր յիշատակարան). «Փառք . . . Ամեն այս Ածաւանդ Սբ Աւետարանիս ցանկացա ես նուաստ ծառայս Այ փցուն եւ անարժան գրիչս Ստեփաննոս Երէց։ Իսկ յաւժարութիւն սրտիս եւ կարողութիւն եւ մարդասիրութիւնն Այ որ յամենայնի կարող է, եւ անյուսից յոյս է եւ անաւգնականից աւգնական որ ոչ անտես առնէ զյուսացեալս յինքն, ի շնորհս նորա ապաւինեալ սկսայ եւ նա ետ կարողութիւն հասանիլ յաւարտ սորա։ Արդ գրեցաւ Սբ Աւետարանս ի թուականիս Հայոց ՋԻԹ (=1480)։ Վասն որո աղաչեմ զսբ դասք Քահանայից առ հասարակ զհանդիպողսդ, որք վայելէք ի քաղցրաճաշակ եղեմարուխ վտակաց քառասաջեա հոսմանց կենդանական Ածախաւս սբ . . . (բառեր սրբուած էր) ի ժամ սուրբ պատարագին, յորժամ խաղան ի վերուստ յողջոյն ձեր իջանելով զաւրք հրեշտակաց եւ սքաւղեալ անհիւ խառնեն ընդ ձեզ, յայնժամ նովին Սբ Աւետարանաւս եւ միջնորդական կենարար հրաշիւք Սբ Պատարագին յիշեսջիք զՏէր Ստեփաննոս Երէցին, որ բազում աշխատութեամբ գրեց զՍբ Աւետարանս յիշատակ Գրիգորիս Աւագ Սարկաւագիս, յիշատակ եւ իւր արեան մերձաւորացն, յիշատակ գրի ի Սբ Երեք Մանկունքս։ Ով զայս Աւետարանս ծախէ կամ գրաւի դնէ զմասն խաչահանողացն առցէ եւ զպատիժն յուդայի։ Ով զայս յիշատակս քերէ կամ կեղեւէ յուդայի եւ կայենի մասնակից լինի»։

5. Թղ. 286բ, (Այլ գրիչ). — «Դարձեալ յիշատակ է Գասրկանց Ճաֆարին ի դուռըն Սբ Սարգսի Սբ Աւետարանս եւ իւր որդւոյն մահտեսի Ղարաղոզին եւ մօրն Ղասամին եթէ ոք ծախէ կամ գրաւ դնէ ըզգրեալ պատիժքն ժառանգէ։»

6. Թղ. 287ա, (Այլ գրիչ). — «Զվերջին ստացող Սբ Աւետարանիս զՅօհան Ճաֆարի որդի զմահտեսի Ղարաղոզն յիշեսջիք ի Քս, եւ Ած ողորմի ասացէք, որ ետ վերստին նորոգել զսա ի հալալ արդեան իւրոյ, յիշատակ հոգոյ իւրոյ, եւ ծնողաց իւրոց, եւ որդոցն, եւ այլ ամենայն ննջեցելոց իւրոց, որ է յիշատակ ի դուռըն Սբ Սարգսոյ։ Եւ արդ արդ աղաչեմ զձեզ ով հանդիպողք սորա, որ ընթեռնույք եւ կամ տեսանէք յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զվերայգրեալքն, ընդ նմին եւ զկազմող սորա զմեղօք զառածեալ Կեսարացի Գրիգոր Սարկաւագս, եւ դուք յիշեալ լիջիք յայլէնիսաղ արարչէն մերմէ որ է օրհնեալ յաւիտեանս ամէն։ Հայր մեր որ յերկինս . . . ։ Նորոգեցաւ ի թվին ՌՃԺԸ (=1669) Նոյեմբեր ամսոյ ԻԶ. ի քաղաքս Կեսարիա ի յԱռաջնորդութեան Սբ Ուխտիս Մարկոս Վարդապետի։»

Ս. Սարգսի Վանքըն եւ գիւղն (Տէրէվանք) է 'ի Կեսարիա, մէկ ժամու հեռաւորութեամբ, ունի մի վանահայր, կը կառավարուի ընդ հսկողութեամբ Կեսարիոյ Ս. Կարապետի Վանուց Վանահօր։ Եկեղեցին վիմափոր է միակտուր։

## 3.

## ՇԱՐԱԿՆՈՑ

### ՌՁէ=1638

ԿԱԶՄ հին արեւելեան, տախտակեայ կաշէպատ։ Ներքին կողմերն հին կտաւ փակցուած են։ ՆԻՒԹ ողորկեալ բարակ Թուղթ։ ԹՈՒՂԹՔ 301 կամ 602 էջք։ ՄԵԾՈՒԹԻՒՆ 21×15 հրդմ։ ԳԻՐ բոլորագիր միջին մաքրութեամբ։ ԳՐՈՒԹԻՒՆ միասիւնակ 13,5×9 հրդմ։ ՏՈՂՔ 23։ ՀԱՆԳԱՄԱՆՔ մաքուր պահուած է։ ԴԱՏԱՐԿ Թղ. 1, եւ 301 բ։ ԽՈՐԱՆՔ հանդերձ մեծ եզերազարդերով՝ Թուով 3. Թղ. 2ա, 113ա. 150ա։ ՊԱՏԿԵՐՔ Թուով 3. Թղ. 91բ, Յարութիւն Ղազարու. Թղ. 112բ, Յարութիւն Քրիստոսի Այ. մերոյ. Թղ. 149բ. Գալուստ Հոգւոյն Սրբոյ։ ԿԻՍԱԽՈՐԱՆՔ Թուով 7. Թղք. 9ա, 47ա, 92ա, 191բ, 238ա, 255բ, 279բ։ ԶԱՐԴԱԳԻՐՔ ԵՒ ԹՌՉՆԱԳԻՐՔ են կանոնաց սկզբնագրերն։ ԳԼԽԱԳԻՐՔ ԵՒ ՎԵՐՆԱԳԻՐՔ են կարմրաւ։ ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ ԵՒ ԼՈՒՍԱՆՑԱՊԱՏԿԵՐՔ Թուով 142, գեղեցիկ գործ։ ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ Թղ. 99ա, 237բ, 255բ, 249ա, 299բ, 300բ, 301ա։ ԺԱՄԱՆԱԿ գրութեան ՌՁէ (=1638)։ ԳՐԻՉ Տէր Բարսեղ Քահանայ։ ՏԷՐ գրչին։ ՏԵՂԻ ի գիւղն

իմ ըղձառուի եւ զորդին Առաքէլ, եւ զքուրքս իմ եւ զեղբայրս իմ զՄեսրովի որ փոխեր է առ Քս եւ զերեցկինն իմ որ յայժմ առ Ած փոխեցաւ, եւ Միացի գերի եւ արատավալի, յոյս զԱծ ունիմ, զորդիքս իմ զՊետրոս, զՄիխայէլ եւ զԳաբրիէլ եւ զդուստր իմ զԵղիսայն եւ զՊարհեն, ում որ հանդիպի սայ խանդաղին նորայ բաղբաղջ մեղսամած մատամբ իւրով գծագրեցի զսայ մեծօ (=մեծաւ) աշխատութեամբ, յիշատակ յանձինս իւրոյ զոր Տր Ած վայելել տացէ մինչ ի խոր ծերութեան։ Արդ աղաչեմ զամենեսեանց եւ անց որք հանդիպիք սմա ուսումնեամբ կամ յուսանելով լի բերանով եւ ուղիղ մտաւք, Ած ողորմի տացէք, ձեր եւ մեր ննջեցելոցս ծնաւղաց նորին ամէն։ Արդ ով ոք ուղիղ մտաւք եւ լի բերանով Ած ողորմի տացէք յիշեցելոցս ի սմա, ստացաւղին եւ ծնաւղաց նոցին, գծողին եւ իւր ծնաւղացն Բարսեղ Քհին որ գրեցի եւ ծաղկեցի եւ կազմեցի, եւ ինքն Քս որ Տրն է փառաց եւ տուող ողորմութեան տացէ զիւր առատ ողորմութիւն եւ երկնից արքայութիւն ամենեցուն առ հասարակ ամէն։ հայր մեր որ։»

6. Թղ. 300բ, (Այլ գրիչ). — «Ո՛վ մանկունք Եկեղեցւոյ յիշեցէք զստացող սորա զմահդասի Իբրահիմս եւ զկողակից իւր Շամխաթուն եւ զհայր մահտեսի Թամուր եւ զմայրն զՎարդին, եւ զորդիք Թամուր եւ զՄկրտիչն որ առ Քս փոխեր են եւ զդստերն Միրայն որ է հանգուցեալ, Նարկուզ եւ Ոսկին, եւ զեղբարքն զՏավնիկն եւ զՄիխայէլ։ Դարձեալ յիշեցէք զԻբրահիմս մղտեսին եւ զհանգուցեալ դստերն զՆազլուն որ առին զՇահրախնձիս կէսն հայր եւ կէս աղջիկն յիշատակ իւրեանց հոգւոյն եւ ծնաւղաց, եւ յամենայն արեան մերձաւորաց կենդանեաց եւ ննջեցելոց հոգւոյն յիշատակ եւ ետին ի դուռն Եկեղեցւոյն ի ձեռն . . . (անունն սրբուած էր) ով որ լի բերանով ողորմի ասէ Ած ողորմի ի միւսանգամ գալստեան ձեզ եւ մեզ ամէն, Հայր մեր . . . . Ի Թվին ՌՂԸ (= 1649), Սբ Խաչին տաւնին, Սբ Խաչն բարեխաւս եւ աւգնական յամենայն հաւատացելոց, ամէն։»

7. Թղ. 301ա, (Այլ գրիչ նօտրագիր). — Դարձեալ յիշատակ է, Կիրակոսին, Բաղիշին, Եղիսային, զհայրն Ղուբդուշա եւ զմայրն Հայյոց եւ զիւր կողակցին Նազլու, եւ զորդիքն Ղուբդուշա, եւ դստերքն Թագուհի, եւ Բաղեշին իւր կողակից Անկուշ, Ոսկիհաս, եւ զորդիքն Յովանէս, Սարգիս, եւ դստերքն Զինար, Կուլուսկին, Պայրամշա, եւ Եղիային իւր կողակիցն Կուլին եւ զորդիքն Թորոս, Նաւրուզ, այլ Թորոս, եւ դստերքն Հայյոց, Վարդիհաս, Զիլֆի այլ Վարդիհաս, զննջեցելոցս ծնաւղաց նորին ամէն։ Արդ ով ոք ուղիղ մտաւք եւ լի բերանով Ած ողորմի տացէք յիշելոցս ի սմա, ստացաւղին, գրողս եւ ծնողաց նոցին. գծողին եւ իւր ծնաւղացն, լի բերանով ողորմի ասէ, Ած ողորմի ի միւսանգամ գալստեան ձեզ եւ մեզ ամէն։ Հայր մեր որ . . . .»



## ՄԱՇՏՈՑ ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՆ

### ԹՈՒԱԿԱՆՆ ԱՆԾԱՆՕԹ

ԿԱԶՄ նոր արեւելեան, Թղթեայ կաշէպատ։ ՆԻՒԹ Թուղթ հաստ, փայլուն։ ՀԱՆԴԱՄԱՆՔ մասամբ պահուած է։ ԹՈՒՂԹՔ 84 կամ 168 էջք։ ՄԵԾՈՒԹԻՒՆ 21,5×16 հարիւրորդամէտր։ ԳԻՐ նօտրագիր, միջին մաքրութեամբ։ ԳՐՈՒԹԻՒՆ երկսիւնակ. 14×10 հրդմ. Սիւնակաց միջեւ եղած բացութիւնն է 1 հրդմ. ՏՈՂՔ 23։ ՊԱՏԱՐԳ Թղ. 84բ։ ՎԵՐՆԱԳԻՐՔ. ԽՈՐԱՏՔ ԳԼԽԱԳԻՐՔ կարմրաւ են։ ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ Թղ. 83ա։ ԳՐԻՉ Սարգիս դպիր։ ԺԱՄԱՆԱԿ. ՏԵՂԻ, ՏԷՐ անծանօթ։ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ, Մաշտոցս կազմին ներքին կողմերն մէյմէկ հաստ հաստ մթագոյն թերթեր կան։

**Մասնանք է ՄԱՇՏՈՑ ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՆ**

1. Թղ. 2ա, Վերնագիրն է — Սահմանադրութիւն դաստիարակութեան նորանծայ մանկանց որք հրաւիրելոց իցեն յաստիճան Քահանայութեան, խրատք հարկաւորք եւ պիտանիք, զոր արարեալ է ի Տէր Առաքելէ Սիւնեաց նահանգին Եպսէ։

2. Թղ. 4բ—7ա, Իսկ յետ է ամին ածեն զնա ծնողքն նորա ընծայիւք ի դուռն Ս. Եկեղեցւոյ։

3. Թղ. 7ա—9ա, Իսկ Իորժամ հասցէ ի չափ հասակի... եւ լիցի երեհամեայ։

4. Թղ. 9ա—12ա, Խրատ Քահանայու-

կան կարգաց զոր առնէ Եպս ի ժամ ձեռնադրութեան ։

5. Թղ. 12բ—20բ, Սկիզբն ձեռնադրութեան ։

6. Թղ. 20բ—35բ, Սկիզբն աստիճանաց կղերիկոսաց ։ Ա. դռնապանութի ։

7. Թղ. 36ա—50բ, Կանոն ձեռնադրութեան Քահանայից, Բ. Ընթերցողութիւն, Գ. Երդմնեցուցչութիւն, Դ. Ջահնկալութիւն, Ե. Կիսասարկաւագութիւն, Զ. Սարկաւագութիւն ։

8. Թղ. 51ա—53բ, Կարգ կուսանաց եւ վեղարի ։

9. Թղ. 51բ—83բ, Յաղագս զաւազանի իշխանութեան ։

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

Թղ. 83ա, (Մատենիս գրչէն) — «Ձեռամբ Սարգիս Դպրի ։

## 5.

## ԵՕԹՆԱՁԱՅՆ ՓՈՂ ՅԻՍՈՒՍԵԱՆ

**1834**

ԿԱԶՄ նոր արեւելեան, Թղթեայ կաշէպատ ։ ՆԻՒԹ նոր Թուղթ ։ ՄԵԾՈՒԹԻՒՆ 20,5×15,5 հարիւրորդամէթր ։ ԹՈՒՂԹՔ 134 կամ 268 էջք ։ ԳԻՐ նօտրագիր, միջին մաքրութեամբ ։ ԳՐՈՒԹԻՒՆ միասիւնակ, 18×11 հրդմ. ՏՈՂՔ 30 ։ ՀԱՆԳԱՄԱՆՔ մաքուր պահուած է ։ ԶԱՐԴ էջ ա, ե. գ, եւ էջ 240, 248, 263, 268 ։ ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ, Մատենիս ճակատն՝ եւ սկիզբն յառաջաբան ։ ԺԱՄԱՆԱԿ գրութեան, 1834 ։ ԳՐԻՉ Կարապետ Վարդապետ Թիւրապեան ։ ՏԵՂԻ Կեսարիա ՚ի Վանս Սրբոյն Կարապետի ։ ՏԷՐ գրչն ։

**Մասնանս է ԵՕԹՆԱՁԱՅՆ ՓՈՂ ՅԻՍՈՒՍԵԱՆ**

1. էջ. գ. Յառաջաբան հեղինակէն ։
2. էջ. 1—10, Կանխասացութիւն ։
3. էջ. 11—45, Բնաբան, «Հայր Թող զոցա զի ոչ գիտեն զինչ գործեն,» Գլ. Ա ։
4. էջ. 45—83, Բնաբան, «Այսօր ընդ իս իցես ի դրախտին,» Գլ. Բ ։
5. էջ. 83—123, Բնաբան, «Կին դու՝ ահա որդին քո, ահա մայր քո,» Գլ. Գ ։
6. էջ. 123—154, Բնաբան, «Էլի էլի լամա սաբաքթանի,» Գլ. Դ ։
7. էջ. 155—178, Բնաբան, «Ծարաւի եմ,» Գլ. Ե ։
8. էջ. 179—203, Բնաբան, «Ամենայն ինչ կատարեալ է,» Գլ. Զ ։
9. էջ. 203—222, Բնաբան, «Հայր ի ձեռս քո աւանդեմ զհոգի իմ,» Գլ. Է ։
10. էջ. 223—239, Նմանաբերութիւնք եօթանց բանիցն Ք՚սի ըստ Գլխոց բովանդակելոց ։
11. էջ. 241—247, Ոտանաւոր բանք ճառիս, (հեղինակէն) ։
12. էջ. 249—250, Ցանկ Գլխոց եւ մասանց ճառիս ։
13. էջ. 251—262, Ցանկ նշանաւոր բանից ճառիս (այբուբենական կարգաւ) ։

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ

Ճակատ մատենիս — «Եօթնաձայն փող Յիսուսեան» — Յօրինեալ ի Նուաստ Թալասցի Թիւրապեան Կարապետ Սարկաւագէ, ի հրաշափառագոյն վանս Սրբոյ Կարապետին Քաջ մեծին Կապադովկեան Կեսարու, ի վերատեսչութեան Տն, Տն, Յակոբայ մեծի Րաբունապետիս ։ Նարդիհնիս զգուշութեամբ յօրինեալ հանդերձ ումանս սիրով արագահաս որդոյն Սարգսի յուխտն ի վանք գիւղն Կեսարեան, ի Թալասցի Կրպ՛ Րաբունւոյ վանահայրութեանն, ի կրպ՛ տրում սարկաւագէ, յամի մարդեղութեան փրկչին 1834 եւ ՚ի Նոյեմ. 5 ։

— Հեղինակին յառաջաբանին վերջը կ՚ըսէ ։

— Ահաւասիկ այսպիսեաց ասաի խրախոյս զգեցեալ անձն իմ, եւ զբանն այն որքղն Վրդին Վանականի, զի «ոչ է ժամանակ երկարաձգութեան առ ի զպարտն հատուցանել» յուշ ածեալ, ի վերայ աւաշնոյ զուգնաքեայ եւ դպրական նախախայրիս, որ վասն պատահարի բարեաց Յովսեփայ — «Պատկեր ամուրեան», —զայս երկրորդականն — «Եօթնաձայն փող Յիսուսեան» — անուն ի ճակատ գնելով (ապարդիւն սարկաւագութեան մերում զպտուղ) լծակից սմին արար, ոն ուրեմն ոչ ի կարգի հասարակական ընթերցուածոց զատ ասպանել, եւ զմեր յետին նուաստութիւն՝ եթէ հարք, ի շնորհս օրհնութեան, եթէ եղբարք, ի սէր ընկերութեան միշտ ունել, պարծանք եւ յարդ մեզ այսոքիկ են ։»

# Զ.

# ՍԱՂՄՈՍ

**ՌՃԺԹ=1670**

*ԹՈՒՂԹՔ* 242 կամ 484 էջք։ *ՄԵԾՈՒԹԻՒՆ* 10×7,5 հարիւրորդամէթր։ *ՆԻՒԹ* Թուղթ։ *ԿԱԶՄ* հին արեւելեան, տախտակեայ կաշէպատ, կողերու ներքին կողմերն հին կտաւ փակցուած են։ *ԳԻՐ* նօտրագիր, կոշտ եւ տգեղ։ *ԳՐՈՒԹԻՒՆ* միասիւնեայ 7×4,5 հրմդ։ *ՏՈՂՔ* 16։ *ՊԱՏԱՌԿ* Թղ. 1ա։ *ՀԱՆԳԱՄԱՆՔ* Թէեւ մաքուր պահուած է մինչ ցայժմ. բայց կազմն քայքայեալ վրայ է։ *ԽՈՐԱՆ* միակ, Թղ. 2ա։ *ԿԻՍԱԽՈՐԱՆ* Թուով 7։ *ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ* ամէն գլխոյ լուսանցքը։ *ՎԵՐՆԱԳԻՐՔ* կարմրաւ են։ *ԳԼԽԱԳԻՐՔ* կարմիր եւ կապոյտ։ *ԶԱՐԴԱԳԻՐՔ ԵՒ ԹՌՉՆԱԳԻՐՔ* են ամէն գլխոյ սկզբնագիրերն։ *ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ* Թղ. 240ա։ *ԳՐԻՉ* Գրիգոր Կողոնացի։ *ԺԱՄԱՆԱԿ* գրութեան ՌՃԺԹ (=1670)։ *ՏԷՐ* գրիչն։ *ՏԵՂԻ* 'ի Նիկսէ։ *ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ* սկիզբն դատարկ թուղթ մի կայ որոյ վրայ անվարժ գրիչ մի փորձեր բրած է։

**Մասնանս է ՍԱՂՄՈՍ**

1. Թղ. 2ա—25բ, Երանեալ է այր։
2. Թղ. 26ա—55ա, Երկինք պատմեն։
3. Թղ. 55բ—87բ. Մի նախանձիր։
4. Թղ. 88ա—113բ, Ողորմեա ինձ Ած։
5. Թղ. 114ա—144ա, Իբրեւ զի բարի է։
6. Թղ. 144բ—170ա, Տէր ապաւէն։
7. Թղ. 170բ—198բ, Խոստովան եղերուք։
8. Թղ. 199ա—233բ, Ի նեղութեան։
9. Թղ. 234ա—238բ, Աղօթք Տէր Ամենակալի, և Հաւատով խոստովանիմ։

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

*Թղ.* 240ա, (239 *պատռած է*) . . . *«Սաղմոսարանս լաւ եւ ընտիր աւրինակէ ումեմն «անար(ժ)անի Գրիգոր Կողոնեցոյ, Թվին «ՌՃԺԹ* (=1670) *ամին փետրվարի ԺԵ աւրն «Դ՛չի, ի քաղաքն Նիկսայու ի դուռն Սուրբ «Ածածնին եւ Սբ Թորոսին եւ Ս. Կարապետին եւայլ միահամուռ Սրցն որ աստ կան «հաւաքեալ, ի Կաթողիկոսութեան Հայոց Տէր «Յակոբ Կաթողիկոսին։ Արդ աղաչեմ զձեզ «հայրք եւ եղբայրք իմ պատուական որք հանդիպիք յայսմ տեղիս յիշեսջիք ի մաքրափայլ «յաղաւթս ձեր զուսուցիչն իմ եւ զծնաւղն «իմ զՄարուքէ Քահանայն զմայրն իմ զՄանանանն եւ զկենակիցն իմ զՃաշիկն եւ զայլ «ամենայն արեանարու մերձաւորքն իմ որ փոխեալ են առ Քս որոյ յոյսն ամենեցուն, եւ «ինձ անարժան Գրիգոր գրչակս հոգս եւ մոխիրս եւ ձեր ոտից կոխան անմեղադիր լերուք խոշորութեան եւ սխալանաց գրիս զի «կար մեր էր, ի ծերութեան ժամանակիս գրեցի, զարիպ էի եւ աւտար, զաղքատս ի բարեաց եւ զփարթամս ի չարեաց, ոհ, ոհ, «ոհ, վայ ինձ անարժանիս. ով սիրելի եղբարք իմ կու հայցեմ ի ձեզանէ որ հայր մեղայիւ մի աւժանդակէք զիս զեղկելիս, եւ «այն որ աստան է ի տուրս բարեաց զձեզ եւ «մեզ ողորմեսցի միւսանգամ գալստեանն ամէն։»*

*Թղ.* 241բ—242բ. *Մի քանի յիշատակարանք կան մկրտութեան եւ ծնընդեան թուականներու՝ գրչի զաւակաց մասին, եւայլն։*



# 7.

## ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹԻՒՆ

**ՌՄԸ=1759 էն առաջ**

ԹՈՒՂԹՔ 83 կամ 166 էջք, երեսի Թուականները գրուած են էջերու վրայ գրով։ ՄԵԾՈՒԹԻՒՆ 22×16 հարիւրորդամէթր։ ԿԱԶՄ երեսի կողերն ինկած են, եւ միայն Թղթերն կազմուած մնացած։ ԳԻՐ նօտրագիր միջին մաքրութեամբ։ ԳՐՈՒԹԻՒՆ երկսիւնակ 16×10,5 հրմ։ ՏՈՂՔ 26։ ԳԱՏԱՐԿ են սկիզբէն 2 Թուղթք։ ՀԱՆԳԱՄԱՆՔ շատ մաքուր պահուած չ՚է։ ՆԻՒԹ Թուղթ հաստ անողորկ։ ԹՌՉՆԱԳԻՐՔ են երբեմն գլխոց սկզբնատառերն։ ՎԵՐՆԱԳԻՐՔ եւ ԳԼԽԱԳԻՐՔ կարմրու են։ ԵԶԵՐԱԶԱՐԴ մը միակ մատենիս սկիզբի ճակատի լուսանցքը։ ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ էջ 155, երկու կտոր։ ԺԱՄԱՆԱԿ գրութեան ՌՄԸ (=1759) էն յառաջ։ ՏԷՐ վերջին ստացող Սարգիս Վարդապետ Բալուցի։ ԳԻՉ եւ ՏԵՂԻ անծանօթ։

**Մատեանս է ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹԻՒՆ որ կը պարունակէ.**

Ա. Էջ. 1—154, Սիմէօնի Ջուղայեցւոյ յոգնիմաստ Վրդի արարեալ հաւաքումն տրամաբանութեան։

Եւ Բ. Հետեւեալն,

Էջ. 156—166, Տաղք ասացեալ ի Տէր Սարգիս Վրդէ Բալուցւոյ, աշակերտէ Տն Միքայէլ Կաթողիկոսի Կիլիկեցւոյ։ (Սոյն տաղք՝ Թուով 17, ինքնագիր են հեղինակին, ընդօրինակութիւնքն տես վարը)։

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ

1. էջ. 155, (Մատենիս գրչէն). — «Եւ արդ աւարտ եղեւ Տրամաբանութեան, զի երեք գլուխքն՝ այսինքն, Պարզառութիւն, Շարամանութիւնն, եւ Շարաբանութիւնն յանդ եղին։ Եւ գիտելի է, զի նախադադափար Տրամաբանութեանս է՝ յԱրիստոտէլէ, բայց՝ ածանցի յայլ եւ այլ լեզուս՝ այլ եւ այլ չարադրութեամբ, աւելորդութեամբ եւ պակասութեամբ, վասն դիւրընկալութեան։ Զի չարադրութիւն իմն անցեալ 'ի լեզուէ իմնքէ յայլ իմն լեզու, տարաձայնութիւնն ինչ ըստ չարադրութեանն երեւի։ Իսկ ըստ նոյն լեզուի չարադրեալքն Թէպէտ եւ դժուարք իցեն, անընտելք՝ ոչ երեւին, վասն որոյ եւ մեք ըստ կարի մերում չարադրեցաք զսա ըստ լեզուի մերում, ի փառս Քսի յաւուրն համառօտելոց։ Որ տայ ճարտարութիւն ճշմարտարան տրամաբանողաց։ Որում փառք պատիւ եւ երկրպագութիւն ընդ Հօր եւ Հոգւոյն Սրբոյ ի յաւիտեանս յաւիտենից ամէն։ Եթէ ըղձաս լինել տրամաբան, եւ միշտ հետեւող գիտնոց վարժման։»

2. էջ. 155, (Այլ գրիչ). — «Շնորհեցաւ գիրքս այս ընծայ ինձ Սարգիս Վարդապետիս Բալուեցոյ, ձեռամբ առն ումեմն հոգեւորի Կարապետ կոչեցելոյ, որոյ որդիքն . . . (անուննքը գրուած չ՚են) կոչեալ։ Առ ի յիշատակ հոգւոց իւրեանց եւ համօրէն հանգուցելոց ի Տէր։ Որ եւ ՔսԱծ ընկալցի ի փառս իւր, եւ հատուսցէ վարձս վաստակոց իւրեանց, ի միւսանգամ գալստեան, շնորհելով արքայութիւնն երկնից անզրաւ յաւիտենիւ ամէն։ Եղեւ այս՝ Թվին ՌՄԸ (=1759) Ապրիլի ԻԸ օրն, ի Տրովադայ, առ դրան Սբ Ածածնին եւ Սբ Ստեփաննոսի գեղեցիկ Տաճարացս։»



**Տաղք ասացեալք ի Տէր Սարգիս Վ.րդէ Բալուցւոյ աշակերտէ Տն Միքայէլ Եպսկպի Կիլիկեցւոյ**

## Ա.

### ԱՌ ՍԷՐՆ ՃՇՄԱՐԻՏ

Սիրելի սէր իմ եւ հոգի
Կարօտ եմ քեզ մերձ իմ արի
Համեղ ու անուշահամ գինի
Թարց քեւ է ինձ դառն եւ լեղի.
Արդ արտասուս աղբերանման
Վասն քո հեղում յարաժամ
Զի թէ այգի կամ բուրաստան
Թարց քեւ է ինձ սուգ տարաժամ.
Բախութիւն փասա քանոն սիրոյ
Մի թողուր զիս ի մէջ ոգոյ
Ծաղկունք հոտաբուրք վարդ յարգոյ
Թարց քեւ է ինձ նման փշոյ.
Գոնէ ցոյց ինձ տես քոյ պայծառ
Ղամպարատիպ լուսով լցեալ
Նարգոս ազնիւ հոտով բուրվառ
Թարց քեւ է ինձ հուր մշտավառ.
Իսկօրէն սիրոյդ բաղձանաց
Կայ անդադար աչերս ի լաց
Բարեկիր սեղան զարդարած
Թարց քեւ է ինձ կրակ վառած.
Սիրոյ քոյ այնքան եմ կարօտ
Հոտաւէտ ծաղկամբ լի արօտ
Թէեւ խառնիմ անմահից հօտ
Թարց քեւ է ինձ դժոխքն անդ մօտ.

## Բ.

Սիրելի քոյ ծառայն եմ ես
Գեղաչեայ եւ պայծառ երես
Եկ ի յայգին իջցուք դու եւ ես
Ազնիւ, բերկրուն եղեալ ցնծայ ընդ մեզ.
Ազնիւ, պուլպուլն 'ի սէր վարդին
Ընդ արեւոյն իջեալ այգին
Նստիլ վերայ կանանչ թփին
Ազնիւ, թեւատարած ծափ ընդ ծափին.
Բախութեան օրերն եհաս
Համայն ծաղկունք բացեալ խիստ խաս
Կարմիր գինի եւ ոսկեայ թաս
Ազնիւ, ևամ թէ դու լցեալ ինձ տաս.
Գոյն զգոյն մրգաբեր ծառեր
Մանտրագորք անուշք նշարեր
Կարմիր ճերմակ ծաղկամբ ծաղկէր
Ազնիւ, որոց հոտոյն եմ զմայլեր.
Իմ սիրելի դու աննման
Այս օրս է ժամ իսկ ցնծութեան
Ես եւ դու իջցուք բուրաստան
Ի սէր ծաղկանցս պատուական,
Ստուերաւ թեւ ծառոց նստցուք
Համեղագոր գինին արբցուք
Մեծաւ սիրով ուրախացուք
Փառս արարչէն հանուրց տացցուք.

## Գ.

Սաստիկ սիրոյդ առ դիպեցայ
Վասն այն առ սէրդ իմ յարեցայ
Սրտիս բաղձանք քեզ փարեցայ
Արի բարձանց եկ իմ սէր
Սէր, սէր, աննման սէր.
Արեգակնատես աննման
Իմ գեղունակ եւ պատուական
Քանզի կարօտ եմ անսահման
Արի եւն. եւն.
Բախջան սիրոյ զքեզ գիտեմ
Վասն այն ճանապարհս քո դիտեմ
Բու վարկեա տեսոյդ կարօտ եմ
Արի եւն. եւն.
Գոհար անգին ծովուց ընծայ
Արի տեսոյդ սիրտ իմ ցնծայ
Քան զքեզ սիրելի ինձ ոչ կայ
Արի եւն. եւն.
Ի մէջ ծաղկանց վարդի հանգոյն
Տեսլեամբ չքնաղ պայծառագոյն
Եկ ցնծութիւն իմ յարահուն
Արի եւն. եւն.
Սահման սիրոյդ անբաւելի
Վերնոյն շնորհօք գիտեմ քեզի
Մերձիր առ իս ես քեզ գերի
Արի եւն. եւն.

## Դ.

Սիրայորդոր ծաղկանց հոտոյն
Էջ ի պարտէզ առաւօտուն

Առ զիս ընդ քեւ իմ ցնծութիւն
Ուրախ լեր սէր իմ սիրազուն.
Ռախարար քաղցրիկ բաժակ
Լցեալ լի ոսկեայ ըմպանակ
Գեղեցիկ չրթամբ կարմրակ
Արբ ուրախ լեր սէր իմ անքանակ.
Իսկ քաղցրաձայն թռչունք համայն
Ի սէր քոյ իջին բուրաստան
Սաւառնելով սէր քոյ խայտան
Ուրախ լեր սէր իմ պատուական.
Վաղ առաւօտ ցօղն իջանի
Տերեւ ծաղկանցն փայլփայլի
Արփին պայծառ արեւ ծագի
Ուրախ լեր սէր իմ սիրելի.
Ռամեալ սիրով բազմիմք սեղան
Հետ սիրելեաց զարմանազան
Դրուատեսցուք երգ քաղցրաձայն
Ուրախ լեր սէր իմ աննման.
Արդ ով չքնաղ ինչ եղեւ քեզ
Բաց զբերանդ խօսիր ընդ մեզ
Գաղուկ ջրեր կանանչ պարտէզ
Ուրախ լեր սիրելի իմ հեզ.
Երանի թէ մնայիր աստ
Ով իմ ուրախութեանս փաստ
Տեսեր զիս մի լինիր ուրաստ
Ուրախ լեր սէր իմ բարեբաստ։

Ն.

Սիրելի իմ քաղցրահայեաց, նազելի,
Քեզ աւետիս ձմեռն էանց
Նաեւ ձայն տատրակի հնչեաց
Եկ նստ ընդ միմով, եկ նստ ընդ միմով
Ցանկալի ցնծասցուք սիրով։
Ահա արգելք մեր ծաղկեցան, նազելի,
Գոյն զգոյն ծաղկօք փթթեցան
Սատուերք ծն զարձան
Եկ եւն.
Ռամես փութով դու ի բարձանց, նազելի
Շողշողելով վերայ լերանց
Քանզի պայման սիրոյդ էանց
Եկ եւն.
Գիտես հրով քոյին ազդու, նազելի,
Բորբոքեցայ արի չիջո՞
Մինչ բաղձանօք բաղձամ զտես քո
Եկ եւն.
Ի քէն հեռի զոլով յանձն իմ, նազելի,
Որ բառ յորէ հիւծեալ մաշիմ
Սաստից քեզ ունայն է կեանք իմ
Եկ եւն.
Սիրոյ քոյին յոյժ խեւացայ, նազելի,
Քանի որ ի քէն հեռացայ
Վասն այն այժմոյս ի քեզ դարձայ
Եկ եւն.
Վերին կամարաց անման, նազելի,
Արփենորակ աչերոյդ խորան
Ռամից ցաւոց զեղ ապեղան
Եկ եւն.
Դիմունք չրթանց քոյին չքեղ, նազելի,
Այտեցդ գեղն զէտ բիւրեղ
Պայծառափայլ եւ լուսահեղ
Եկ եւն.
Երանի ասամ քեզ ունօղաց, նազելի,
Տեսոյդ հանդէպ գեղերողաց
Ի մէնջ զինարդ չըջիս ի բաց
Եկ եւն։

Ջ.

Արգաւանդ պաղատու այգոյ նոր ծաղիկ, սէր
ի նոր ծաղիկ,
Բուրի ի քէն հոտ կեցութեան անուշիկ
անուշիկ,
Զմայլեցոյց սիրահարեալս քոյդ հոտիկ,
սէր իմ քոյդ հոտիկ,
Ով աննման եկ մի թողուր զիս միայն
զիս միայն,
Եկ մի հնար եկ ոչ կարեմ կալ միայն
կալ միայն։
Բուրաստանի նման փթթեալ ծաղկալի,* սէր
իմ ծաղկալի,
Ի քէն ձօն պարգեւաց գերարփի գերարփի,
Պարտէզ հոգւոյս ոռոգես ջուր կենդանի,
սէր իմ կենդանի,
Ով աննման եւն.
Գարնանային եղանակի կարմիր վարդ, սէր իմ
կարմիր վարդ,
Ոսկենճաճանչ ականակերտ զլխոյ զարդ,
զլխոյ զարդ,
Գոհար ականց հիւսեալ պսակ իբր զվարդ,
սէր իմ իբր զվարդ,
Ով աննման եւն.
Դրախտ նորազուարճ համայն բարեօք լի ա-
ռատ, սէր իմ լի առատ,
Շքեղատիպ լուսացնցուղ անարատ անա-
րատ
Բաժակ ոսկի լցեալ սիրով անապակ, սէր
իմ անապակ,
Ով աննման եւն.
Երջանկատես չքնաղատիպ ամենից, սէր իմ
ամենից,
Ծոց քո պարտէզ շնորհիւ լցեալ բարելից,
բարելից,
Ցեանեալ ծառայս առ ի ծոց քոյ բարե-
բելից, սէր իմ բարելից,
Ով աննման եւն.

## Է.

### Վարդն ասէ

Ահա գարունն եկեալ եհաս ,
Խեղճուկ պուլպուլ քանի մէկ լաս ,
Ի սար ի ձոր երթաս եւ գաս ,
Համդէպ ծառոյս նստեալ ողբաս ,
Մի լար իմ ժամանակն եհաս ,
Բացուիլ փայլուն որպէս էլմաս ։

### Պուլպուլն ասէ

Քանի աշնան հողմերն պաղ ,
Փչեց իմ սրտիկն եկից աղ ,
Զի չորացոյց ծառըդ չքնաղ ,
Վասն այն ասեմ հազար աւաղ ,
Առաւօտուն ես վազ ընդ վազ ,
Մինչ հայիմ քեզ լինիմ զըւաղ ։

### Վարդն ասէ

Իսկապէս ցուրտ հովն աշնան ,
Զիս չորացոյց քեզ անդիման ,
Հարաւաչունչ հովին գարնան ,
Վեր ընձիւղեաց զիս զէտ չուշան ,
Այժմ արձակեմ ծիւղ հրաշագան ,
Ոստնելով վարդ կարմիր բիւրեան ։

### Պուլպուլն ասէ

Ուրեմն ես գամ քեզի մօտիկ ,
Շինեմ զբոյնս իմ խորոտիկ ,
Իմ ցանկալի վարդ խատուտիկ ,
Հագերես կանանչ տերեւիկ ,
Միշտ ծիծաղիս որպէս մանկիկ ,
Բուրելով հոտ քո անուշիկ ։

### Վարդն ասէ

Կարի գանգատ ունիմ ի քէն ,
Դու ողբալով կանչես ինձ զէն ,
Զի սիրելի կարծիս յինէն ,
Սակայն անհաշտ ունիս ինձ քէն ,
Այդ արտասուքն հեղել իքէն ,
Հուր կու դառնայ կայրէ զիս մէն ։

### Պուլպուլն ասէ

Ինձ պարտ էր քեզ մեղադրել ,
Զքոյդ ի քեզ մատուցանել ,
Որպէս ոխ ունիս սիրտդ անել ,
Որ կու բացուիս ինձ չես ձայներ ,
Միթէ ունիս ինձ պէս ընկեր ,
Վասն քո շրջող միշտ երեր ։



## Ը.

### Ի ԴԷՄ ԽԱՉԵԼՈՒԹԵԱՆ ՅԻՍՈՒՍԻ

Սոսկալի աւուրն ահաւոր ուրբաթոյն մեծի ,
Զոր հեղուսիւք բեւեռեցին զքեզ տէր ի խաչի ,
Զհանդուրժեալ չարչարանաց համբուրդ արարչին ,
Խաւարեցաւ լոյս արեւոյն ի միջօրէին ։
յԱհէ Աձային փառաց քոյին սասանէր ,
Երկիր հիմանց տատանելով սաստիկ գլորդէր ,
Վարագոյր տաճարին վերուստ 'ի վայր պատառէր ,
Մահ անմահից մահկանացուաց յայտնի քարոզէր ։
Ռամք ատեղաց սրգաւորեալ ի սուգ նստէին ,
Ընդ խաւարիլ արեգական բիւրեանք լռէին ,
Զօրք հրեղինաց մի առ միով յերկիր ճէպէին ,
Զքեզ ի խաչին տեսեալ Տր եւ Ած կարդային ։
Գոչելով անդ էլի էլի փառակցին քոյ հօր ,
Հալածեցեր գիշերն 'ի մէնջ ծագելով նոր օր ,
Որով յայտ անդիմանեցաւ բանսարկուն հզօր ,
Ի յահէն փախուստ արշաւէր մթալով անզօր ։
Իջիր դու բանական հոգով ուր էին կապեալ ,
Հոգիք նախահարցն 'ի դժոխս յոյժ տարակուսեալ ,
Զոր եւ կանուխ գալուստըն քոյ նոցա ծանուցեալ ։
Զմիտս նոցին անջինջ գրով կայր տպաւորեալ ։
Սուրբ յարութեամբ քոյ վերածեր զԱդամն աջին ,
Եւ ընդ նմին ազատեցեր ծնունդս նորին ,
Որով զուարճացեալ ցնծան բանակք վերին ,
Քանզի նոքօք լցեր զթիւ անկելոց դասին ։

---

## Թ.

### Ի ԴԷՄՍ ՍՈՒՐԲ ՀՈԳԻՈՅՆ

Սուրբ Հոգի անստեղծ լուսատու եւ լոյս ,
Անվայրափակ արեւ անկելոյս իմս յոյս ,
Ծխով մեղաց սեւացաւ զհոգի գերոյս ,
Լուսաւորեալ գերիս փայլեցո զէտ լոյս ։
Անձն իմ որպէս երկիր Ջրոյդ ծառաւի ,
Ուստի կարդամ առ քեզ լուր վաղվաղակի ,
Զի թէ անփոյթ առնես անձն իմ նուաղի ,
Իբրու խոպան այգի փուշ պտղաբերի ։
Բնոյդ աղաղակեմ մի դարձուցաներ ,
Զերեսս քոյ յինէն ո՞վ դու անկեղծ սէր ,
Իմ աղետիցս գոյժ մի՛ անտես առներ ,
Ապա թէ ոչ կորուսցելոցն եմ ընկեր ։
Գերոյս լեր օգնական ով դու Սուրբ Հոգի ,
Որով մէգ խաւարին յինէն փարատի ,

Զի համապարհ վերնոյն յներուսաղեմի ,
Քոյին նպաստութեամբ ինձ առաջնորդի ․
Ինձ լսելի արա ցնծութեան ձայն քոյ ,
Թէ եկ առ իս աղնիւ ծառայ իմ յարգոյ ,
Ի քեզ անկայ յորովայնէ մօր իմոյ ,
Ուրեմն եւ զիս հրաւէր ձայնիւ բերկրեցոյ ․
Սուրբ եւ մաքուր անուամբ թէ կեցուցես զիս ,
Նաեւ ողորմութեամբ փրկես զը գերիս ,
Յայնժամ յայտ անզիման իսկ ծանուցանես ,
Ինձ չնչին ծառայիս Տէր բացափայլես ․

## Ժ.

### Ի ԴԻՄԱՑ Ս. ՀՈԳԻՈՅՆ

Սահման սիրոյ երկնածորան որ ի վերուստ ծագեցար ,
Հանգոյն մրրկաձայնակ Ջրոյ՝ հողեղինաց արբուցար ,
Ո՛ լոյսդ անըստուեր երրորդ ժամու՝ մետասանիցն ցուցար ,
Առ ի վերուստ իբրեւ ըղձօղ՝ իմաստ քոյին կաթեցաւ , կաթեցաւ , կաթեցաւ ․
Անման բանին հօր փառակից դու համագոյ Սբ Հոգի ,
Որք սպասեալ հօր աւետեաց անուն բանին կենդանի ,
Ո՛ ուստի հրաքառակ երկնից՝ սիրաշարժ ո՛վ բաղձալի ,
Առ ի վերուստ եւն ․
Բարունեաց լցուցիչ աղբիւր՝ աննիւթ առատահոս ,
Տուիչ թարգմանութեան լեզուաց՝ յայտնիչ խորոց բարեբոյս ․
Ո՞ , նա եւ յամանց խաւար մտաց լուսաւորիչ մշտալոյս ,
Առ ի վերուստ եւն.
Գումար դասուց մետասանից՝ քեզ սպասեալ միայն ,
Ի վերնատանն ակն ունելով բառ խոստման Սբ Միածնին ,
Ո՞ ի ժամ իջման քոյ առ նոսա պարառելով հրճուէին ,
Առ ի վերուստ եւն.
Իմանալի կենաց վտակ դու կենսատու ամենից ,
Որ եւ զարդարեցեր շնորհիւ զդասըս մետասանից ,
Ուստի զհոտ քոյ տարածեալ սփռեցաւ ծագս բնաւից ,
Առ ի վերուստ եւն.
Սրբացուցիչ հոգւոց մերոց ո՛վ Սբ Հոգի գերունակ ,
Մինչ օրէնես լուսազարդիք անհամեմատ եւ անքանակ
Ո՞ յարկ առնելով երեք անձնեայ եւ բընութեան միայնակ
Առ ի վերուստ եւն.

## ԺԱ.

### ՆՈՐԻՆ ԱՍԱՑԵԱԼ ԽՐԱՏՕՐԷՆ

Սուտ անցաւոր պատիր կենաց անձն իմ քանի մէկ խաբիս
Պանդխտացեալ ի կեղարեան մութ վրանի բնակիս
Արդ վերջապէս մեռանելով դու ի հողոյ վիճակիս
Որով զազիր զարշ եւ վատթար մարմնովդ ի հողոյ վիճակիս ․
Ընտակեր Սբ առաքեալ Պօղոս զքեզ խրատէ
Ոչ զբաղել սիրով կենայս պարաւելւոյ յորդորէ
Գեղաշէն վերինըն Սիոն գնալ , քեզ միշտ խրատէ
Ոչ ունիմք մեք քաղաք աստէն մեզ մնալոյ բարբառէ ․
Իսկ Սողոմոն համանման մեծաւ փողով գոչէ զայս
Ունայնութիւն ունայնութեանց վարկպարազի է կեանս այս
Սարսափելի մեծ առնենին խղճահարեալ զըղջանաս
Բայց անօգուտ ապաշաւմամբ , քանզի աստէն խոտանաս ․
Վայ ի վերայ վայի կարդաս
Անձն իմ քեզէն ողբալի ,
Ընոյն երեսացըն վարեալ ․
Դիւաց լինիս փարելի ․
Արդ մի մնար դու ո՛վ անձն իմ
Պարտաւոր մեղաց գերի ,
Եպերանաց քոյին հաչիւն
Տուր աստէն զղջմամբ սրտի ․

## ԺԲ.

### ՆՈՐԻՆ ԱՍԱՑԵԱԼ Ի ԴԷՄ ԱՆՁԻՆ ԻՒՐՈՅ

Արդ՝ ընդէ՞ր տրտում ես սիրտ իմ վարանեալ , աւա՜ղ ,
Կամ թէ ընդէ՞ր խռովես զիս յուսահատեալ ,
Յուսատուանիւ Քո փրկիչ բարերար անձն իմ ,
Յուսայ ի նա զի նայէ կեանք կեցուցիչ , ո՜հ ո՜հ մեղաց ազատիչ ․
Նա որ վասն իմ ազատութեանըն սակի , աւաղ ,
Ոչ զարշեցաւ առնուլ մարմին մեղսալի ,
Մի երկբայիր թէ զքեզ փրկել ոչ կամի ,
Յուսայ ի նա եւն.
Այն բան մարմնով հովիւ կոչեցաւ , աւաղ ,
Սիրով քոյին փայտ անիծից բարձրացաւ ,
Այլ եւ ազդու սրով սատիկ խոցեցաւ ,
Յուսայ ի նա եւն.

*Որոյ վերաց կրկին վտակ մաքրարար , աւաղ ,*
*Արիւն եւ ջուր բղխեաց մեղաց սրբարար ,*
*Ծնծայ սիրտ իմ զի նա է քեզ հաշտա-*
*բար , յաւէտ*
*Ցուսայ ի նա եւ.*

---

## ԺԲ.

### Ի ԴԷՄ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

*Սրբուհի կոյս համատարած՝ արարածոց ա-*
*բարչին*
*Դու ես ծնօղ անախտաբար՝ բարձող եր-*
*կանց Եւային ,*
*Ցոյս իմ անարատ կոյս ։*
*Անքակ միութեան խառնարան՝ անժամանակ*
*փեսային ,*
*Տաղաւար հօրն երկնաւորի՝ ազատարար*
*զաւակին*
*Ցոյս իմ անարատ կոյս ։*
*Ընտրյն իջեւան թագուհի՝ տապան կենդանակ*
*բանին ,*
*Ծառ կենաց անկեալ Մարիամ աներկե-*
*ւան դրախտին*
*Ցոյս իմ անարատ կոյս ։*
*Գերազոյն երկնաձիր հացին՝ գերամբարձ սե-*
*ղան նորին*
*Աշտանակ ոսկեղէն կերտեալ լուսընկալ*
*նոր խորանին*
*Ցոյս իմ անարատ կոյս ։*
*Իմանալի անկոյն սանդ՝ բարունակ սուրբ ող-*
*կուզին*
*Սրովբէից տարփալի տաճար , ամպ թե-*
*թեւ կոյս տիրածին*
*Ցոյս իմ անարատ կոյս ։*
*Սիրաշարժ հայր առաք բանին տալիթայ լոյս*
*լուսածին*
*Ջուր կենաց պարզեալ բնութեանս յոր-*
*դառուխ սուրբ դրախտին*
*Ցոյս իմ անարատ կոյս ։*
*Վանիչ խաւարի մթութեան*
*Անհամեմատ կոյս ածին ,*
*Ըամից արարչին լուսոյ*
*Դուռն երկնամնոյծ տաճարին*
*Ցոյս իմ անարատ կոյս ։*
*Անպարագիր արփոյն շաւիղ՝*
*Պարագրող կոյս անքննին ,*
*Երկընային դասուց գեր ի վեր*
*Տիրամայր կոյս մայր բանին*
*Ցոյս իմ անարատ կոյս ։*

---

## ԺԳ.

### Ի ԴԻՄԱՑ ՍՐԲՈՑՆ ՍՏԵՓԱՆՆՈՍԻ

*Սր Ստեփաննոս քաղցրաձայն հաւ ,*
*Անհարաց զխտես ընդ հարաւ ,*
*Հազարապետ բանին անրաւ ,*
*Սր Ստեփաննոս մաքրամիտ հաւ ,*
*Միածնին անարատ վկայ բարձրուղէշ ար-*
*մաւ ։*

*Արդ դու խաչելոյն խաչակիր ,*
*Արդիւնարեր մշակ ընտիր ,*
*Քոյ սուրբ արիւնդ հեղաւ երկիր ,*
*Սր Ստեփաննոս Աձակիր ,*
*Բանին Հօր եւ հոգւոյն տաճար վկայ գե-*
*րընտիր ։*

*Ըամեալ քարիւն որպէս շուշան ,*
*Ձցխուս տեսեր զէմ անդիման ,*
*Կանգնեալ ընդ յաջմէ հօր էական ,*
*Սր Ստեփաննոս դուշակ գարնան ,*
*Անմարմնոց դասքն ի հանդէս քոյ պարառ-*
*եալ ցնծան ։*

*Գերազոյն նման անմարմնոց ,*
*Համգիտաղիր եղեր սրբոց ,*
*Որպէս ըղգաստ ի մէջ գայլոց ,*
*Սր Ստեփաննոս դու հայր սրբոց ,*
*Մաքրողական աղ համեմիչ նեխեալ մեր*
*հոգւոց ։*

*Ի հանդիսի քոյ կատարման ,*
*Ժողովք հրէից գումարեցան ,*
*Սողոս կամէր զլոյսդ անխափան ,*
*Սր Ստեփաննոս շիջանիլ . . . ,*
*Քեզ բացեալ յերկնից պատուհան , եւ լոյս*
*ցնծութեան ։*

*Սիրով հոգւոյն գոլով լցեալ ,*
*Եղեւ երկնից դուռն բացեալ ,*
*Ցխուս անդուստ խրախուսեալ ,*
*Սր Ստեփաննոս շնորհիւ լցեալ ,*
*Սրբասուն մարմնոյդ հոլք վերին ի պատիւ*
*իջեալ ։*

*Վարդագոյն կաթիլք քո արեան ,*
*Աննման մարմնոյդ որ հեղան ,*
*Ըամից ցաւոց մեր ապեղան ,*
*Սր Ստեփաննոս ցող քաղցրութեան ,*
*Ծովածուփ կենցաղոյս ունայն փրկարիթ*
*տապան ։*

*Դու իսկ ուռկան բանին կենաց ,*
*Արկիր ի ծով հոգիս մարդկանց ,*
*Փողոս կարգիւ հանէր ի բաց ,*
*Սր Ստեփաննոս աղբիւր կենաց ,*
*Քարոզութեամբ քոյ դասեցիր*
*Ընդ հրեշտակաց հոգիս մարդկանց ։*
*Երկնաձիր պարգեւաց երկիր ,*
*Տապանակ ոսկեայ կենսակիր ,*
*Էական այգոյն գերընտիր*
*Սր Ստեփաննոս մշակ ընտիր ,*
*Քեզ աղաչեմ բարեխօսեա բանին գերընտիր։*

## ԾԵ.

### Ի ՎԵՐԱՅ ԼՈՒՍԱՒՈՐՉԻՆ ԳՐԻԳՈՐԻ

Ի յերկնից կուսէ հրաւէր հարսանեաց
Առաքելաշնորհ բանիւ քարոզեաց
Հարսնարանին մեզ պարակից արա՛րեաց
Սբ Գրիգոր Լուսաւորիչ Պարթեւաց
Զոր 'ի մարմնի անմարմնապէս գեր փայ-
լեաց ·
Սրբութեամբ ընկալաւ լոյծ կենարարին
Արօրապէս հերկեաց զսիրտ արքային
Սերմն կենաց բանին էար 'ի նմին
Սրն Գրիգոր Լուսաւորիչ մերային
Զխաղն Տրդատ փոխեաց ի կերպ մարդ-
կային ·
Անմահութիւնս մեր աղն պատուական
Խառնեալ եղաշրջեաց սուրբ անապական
Զի ծանրութիւն աղին կրեաց մեզ փոխան
Սբ Գրիգոր Լուսաւորիչ աննման
Որով եղաք շնորհաց հոգւոյն կայարան ·
Բնուոյն բանիւ ի յանձն էառ զկիրս խաչին
Մեզ կարապետ եղեւ երկնի կամարին
Խնդրեալ եգիտ Սբ՛ մարգարիտն այն անգին
Սբ Գրիգոր Լուսաւորիչ . . . .
Ազգս հայոց կոչեաց սեղան Սբ՛ հացին ·
Գեղեցկապէս շրջէր լերանց գագաթան
Զի Նոյի եսես ի վաղ վաղորդեան
Բարձրաբարբառ փողեր համբաւ հաշտու-
թեան
Սրն Գրիգոր Լուսաւորիչ սրբազան
Իսկապէս նոր արեւ մեզայ մթութեան ·
Իմանալի որթոյն ողկոյզ սուրբ ընտիր
Գինի ուրախարար շնորհաց՝ գերընտիր
Որով զմայլեցոյց ըզմեզ լիալիր
Սրն Գրիգոր Լուսաւորիչ բարեկիր
Բանիւ շնորհաց արար մեզ Ածակիր ·
Սբ բերանոյն ծորէր առատն ցաւոց դեղ
Ցօղօրելով թէ մահուք դուռն ընդնեղ
Ազգս հայոց ծնաւ ողջոյն զէտ բուրեղ
Սրն Գրիգոր Լուսաւորիչ արփինագեղ
Տարամերժեաց մեզ 'ի սաւէն մահառեղ ·
Վառեա լուսով քոյին
Անտես միաք հիքոյս
Բախեցո զարամեալս
Գառնալի ողւոյս
Ահա անկեալ փարիմ
'ի Պատուական քոյս ,
Ո՛վ Սբ Գր՛. միջնորդ լեր վասն
իմ խեղճոյս
Երջանկից պաղատիմ
Տալ ինձ շնորհաց լոյս ·



## ԾԶ.

### Ի ԴԷՄՍ ԱՆԱՌԱԿԻՆ

Ի հայրենի գթոյն տարամերժեցայ
Հայրենատուր շնորհացն վասնօղ գտայ
Ընտանի խնամոց նորին հեռացայ
Ի թակարդ թշնամոյն անկեալ մահացայ ·
Սառուցեալս 'ի սիրոյ կենսաւէտ տեղւոյն
Տարաղէպ մերժեցայ զօրաց հրաշուն
Քանզի ցանկալով մահածին պտղոյն
Անկայ ի ձեռս անմարմին չարին անփուն ·
Անհնարին զխօք յարաժամ ոգով
Շրջապատեալ եղէ մեղսամած մառով
Վարեալ արգիլեցայ կալանս լի բոցով
Ուրանօր հուր անշէջ անլոյս մթալով ·
Բամբ խաւարաւէր անհաշտ թշնամեաց
Ցաւէտ զիս ընդ իւրեանս ունին ակնարաց
Որ բառ յօրէ փութան հնարս տանջանաց
Առագրեն լալ աչաց կրձանել ատամանց ·
Գերիս անմխիթար վարանեալ այսպէս
Մինչ ցանկայի եղջերուաց յաղել խողապէս
Ուստի զելս իրացն եղեւ ինձ հանդէս
Թէ զիա՞րդ փրկեցիմ անմարմին զայլէս ·
Իսկ իմ եկեալ ի միտս առ այն խորհելով
Թէ քանի՞ք կան վարձկանք հօրս ընթեր
կալով
Դարձայց եւ ես մեղայ առ քեզ գոչելով
Ընկալ եւ զիս ընդ ծառայս քո դասելով ·
Սատրէկ սիրով դարձեալ առ նա ողբալով
Քեզ առաջի մեղայ հայր իմ գոչելով
Ուստի նա բնական գթոյն շարժելով
Եւ ընդ առաջ սիրով համբոյր ինձ տալով ·
Վաղվաղակի աստ երթեալ փութացէք
Արդ զեզն պարարակ զենեալ մատուցէք
Բախցեալ այսօր հրճուեալ ցնծացէք
Դարձման անառակի որդւոյս խնդացէք ,
Ահա երէց եղբայր իմ եկեալ աստ
Պարգեւայերձ փառօք զի՞արդ զարդարէ
Եղեռնագործ ձեռացն զարդ շնորհէ
Տալով իշխանութիւն ի թիւս մեր կարգէ ·
Բարկացեալ լի ցասմամբ 'ի բաց հրաժարէր
Առաջարկեալ զիւր արդիւնս ցուցանէր
Լաւ է ինձ յարաժամ բացեալ կալ ասէր
Ոչ մի վասն իմ չետուր ձայնիւ բողոքէր ·
Իւրծեալ որդոյ աստ մինչ մայր
Ցանկութեամբ չար գործոյ վարեցաւ գերի
Ուստի ասնդ քոյին վասնեցի ի մարմնի
Ցասմամբ քաղցր եղջերին զոլով վայրենի ·
Էական բնութեամբ հայրն բարերար
Ասէ ո՜վ դու որդեակ իմ մի բարկանար
Սա մինչեւ ցայսօր որպէս մեռեալ կայր
Այսօր կենդանացաւ պարտ է քեզ խնդալ ·



# Ց.

## ՃԱՇՈՑ ԳԻՐՔ

### ԹՈՒԱԿԱՆՆ ԱՆԾԱՆՕԹ

ԹՈՒՂԹՔ 409 կամ 818 էջք ։ ՄԵԾՈՒԹԻՒՆ 41×27 հարիւրորդամէթր ։ ԿԱԶՄ հին, արեւելեան ճաշակաւ, տախտակեայ կաշէպատ, արտաքին երկու երեսներն հնգական տեղէն պղնձեայ գամերով գամուած են ։ ԳԻՐ բոլորագիր, մաքուր գրչութիւն ։ ԳՐՈՒԹԻՒՆ երկսիւնակ 32×20 հրդմ. սիւնակաց միջեւ եղած դատարկ միջոցն է 1,5 հրդմ ։ ՏՈՂՔ 37 ։ ՓԱԿԱՍ սկիզբէն եւ վերջէն քանի մը թերթեր ինկած են ։ ՆԻՒԹ թուղթ պինդ, ողորկեալ ։ ՀԱՆԳԱՄԱՆՔ մաքուր պահուած է ։ ԽՈՐԱՆՔ համեղերձ մեծ եզերազարդերով թուով 3, թղ. 165ա, 227ա, 309ա ։ ԿԻՍԱԽՈՐԱՆՔ թուով 4, թղ. 50բ. 104ա. 273ա. 330ա ։ ԶԱՐԴԱԳԻՐՔ, ԿԵՆԴԱՆԱԳԻՐՔ, ԹՌՉՆԱԳԻՐՔ են հասարակ սկզբնատառերն ։ ՎԵՐՆԱԳԻՐՔ կարմրաւ են ։ ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ ամէն օրեայ ճաշու գրեանց լուսանցքը ։ ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ թղ. 142բ, 308բ (գլխաւոր յիշատակարանն կը պակսի) ։ ԳՐԻՉ Գէորգ ոմն ։ ԺԱՄԱՆԱԿ, ՏԵՂ եւ ՏԵՂԻ անծանօթ ։ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ կազմի առաջին կողքի ներքին երեսին վրայ գրուած է «1858 Յուլիս 1 Ղարա չայր ժամընա՝ Կէրմիրլի Եսայը օղլու Գրիգոր յիշատակը ։»

**Մասնաւոր է ՃԱՇՈՑ ԳԻՐՔ**

1. Թղ. 1 Կանոն Ս. Ծննդեան ։ (Սկիզբէն թղթեր ինկած են, կ'սկսի Ծննդոց գրքի կէսերէն)։
2. Թղ. 50բ, Կանոն Բուն Բարեկենդանի ։
3. Թղ. 104ա, Կանոն Ղազարու ։
4. Թղ. 165ա, Կանոն Յարութեան Տեառն մերոյ ։
5. Թղ. 227ա Կանոնքն Հոգեգալստեան, — *Սկզբնատառութիւն* — «Մեծի հրաշափառ Պէնտէկոստէիցն ։ Երանելոյն Ներսէսի Եպսին Լամ(բ)րոնոյ ներբողեան ասացեալ ի Հոգին Սուրբ չքնաղ եւ զարմանալի» ։ *Սկիզբն*, — «Սոփիայիմ ի սիրոյ սրտիս բաղձանաց նուիրել զբանս ։»
6. Թղ. 273ա, Կանոնքն Վարդավառին, Ս. Պայծառակերպութեան Քսի Այ մերոյ ։
7. Թղ. 309ա, Կանոնքն Ննջման Ամենօրհնեալ Ս. Ածածնին ։
8. Թղ. 330, Կանոնքն Ս. Խաչին ։ *Խորանք համեղերձ մեծ եզերազարդերով չաւ գործ են ։*

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ

1. Թղ. 142բ—143ա, (է եռու ստորեւ լուսանցքը գրուած). — «Ե(ւ) այսպէս ծա-
«նիր անտողդ գլխպատող զի ուսանիցիք, զգիշերն
«որ էր հսկումն եւ Տէր մեր աղօթէր ծնրա-
»դրութեամբ զգիշերն կատարել, իսկ երբ լու-
«սացաւ որ ի խաչ հանեն յերրորդ ժամուն,
«հրեայքն զգլուխն Քսի եղեգամբ հարկանէին
«եւ կատակէին կեղծաւոր ծնրադրութեամբ
«եւ ասէին, ողջ եր արքայդ հրէից, եւ զու-
«յայսմ ժամու մի դնել ծունր որ ոչ ընդ նո-
«սա խառնիս . . . փառն այնր առէ սաղմոսե-
«լով զանէր աղաչեցուք, եւ ծունր դնելով.
«եւ զիս անարժան Գէորգ գրչակս յիշեցէք ի
«Քս, ամէն ։»

Թղ. 308բ, (Այլ գրիչ եւ զանազան շըրջանակի մէջ գրուած). — Այս ինչ է՝ զոր
«գրեցի ի քարտէզս այս, զի ես Թաղաւցի Տէր
«Յովհաննէս եկի ի Սարգսի Վանքն ի Սբ
«յենդմէ՝ որ էր թուականն Հայոց ՌՃԽԷ (=1698),
«եւ երբ ՌՃԾ (=1701) թիւն լցաւ, նա Հաճի
«Աղամ՝ պատճառ եղեւ շինութեան Սբ Սարգ-
«սի Եկեղեցիս՝ վերատեսութեամբ իմով ա-
«նարժանութեամբս ։ Եւ յետ որոյ բարձրացաւ
«թուականն Հայոց եւ եհաս ՌՃԾԷ (=1708)
«եւ ամսեանն Հոկտեմբերի ԻՋ օրն Երեք-
«շաբթի, ի գալն քաղաքէն խոցեցաւ Հճի Ա-
«դամ՝ յումեմնէ, եւ երեք օր ապրեցեալ վե-
«րափոխեցաւ առ Քս, եւ ասացէք իւր հոգ-
«ւոյն Ած ողորմի, քանզի բազում երախտիք
«եւ աշխատանք ունի ի վերայ այս Սբ Վա-
«նիցս ։ Եւ յետ այսորիկ զՄահտեսի Խաչա-
«տուրն (Հաճի աղային) զարկողն ըմբռնեցին
«եւ եդին ի բանտի. եւ մնաց ի բանտին ՃԼԸ
«օր՝ չատ ատակ խարձեցին ոչ կարացին սպա-
«նանել զնա. եւ յետոյ Եղիա Չէլէպին Իս-
«տանպօլոյ սայի էր ուղարկեալ Փաշային թէ
«կախեա զնա. եւ տեսեալ Փաշան սայուն
«բերած թուխտն, եւ միւս օրն Մարտի ԺԱ
«օրն Ուրբաթ կախեաց զդողն, եւ այնպէս
«բարձաւ չարն 'ի միջոյ եւ ոչ եռես զփառսն
«Այ ։ Եւ որք հանդիպիք այսմ տակաւ գրիս,

«եւ առացէք Ած ողորմի Հձի Կարապետի որ-
«դի Մահտեսի Խաչատուր Չելեպուն հոգւոյն
«ն թերանով վասն զի բազում աշխատութիւն
«ունի ի վերայ մեր Վանացս, Ած՝ լուսաւո-
«րեսցէ զիւր հոգին եւ հանգուսցէ յարքայու-
«թեան յերկնից. ընդ Սրս եւ ընդ սիրելիս
«անուան իւրոյ որ է օրհնեալ յաւիտեանս, ա-
«մէն։»

## Գ.

## ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

— ՀԱՏՈՐ Բ. —

**ՌՄԻԳ=1774**

ԹՈՒՂԹՔ 201 կամ 402 էջք։ (էջերու Թուակարգն կսկսի 391 էն)։ ՆԻՒԹ Թուղթ։ ՄԵԾՈՒԹԻՒՆ 15×10 հարիւրորդամէթր։ ԿԱԶՄ արեւելեան, տախտակեայ կաշէպատ. երկու ժեղէն կապեր ունի։ ԳԻՐ բոլորագիր մաքուր։ ԳՐՈՒԹԻՒՆ միասիւնակ 10,5×7 հրդմ. կարմիր շրջագծուած։ ՏՈՂՔ 18։ ՀԱՆԳԱՄԱՆՔ մաքուր պահուած է։ ԶԱՐԴԱԳԻՐՔ ԵՒ ԹՌՉՆԱԳԻՐՔ են ամէն գլխոց կամ ամէն պրակաց սկզբնագրերն։ ԳԼԽԱԳԻՐՔ կարմրաւ են։ ՎԵՐՆԱԳԻՐՔ նօտրագիր են կարմիր եւ կապոյտ։ ԳԱՏԱՐԳ են սկիզբէն 5 եւ վերջէն 3 Թղթեր։ ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ մի հատ միայն կիսախորանաւ էջ 392։ ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ էջ 767. 770, 777, 780։ ԺԱՄԱՆԱԿ գրութեան ՌՄԻԳ (=1774)։ ԳՐԻՉ Յօհաննէս չնչին գրչի։ ՏԵՂԻ 'ի Գերմանիկ։ ՏԷՐ գրչին Թերեւս։ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՔ մասնիս վերջն, էջ 783—790, ցանկ եւ ցուցակ մը կայ գլխաւոր բանից գրքոյս. եւ էջ791—792 տախտակ մը կայ սխալներու։ (Սոյն ձեռագիրն տպագիր օրինակէ մը ընդօրինակուած կերեւի)։

**Մասնանս է ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ**

1. էջ 391, (ճակատ), Հատոր երկրորդ Քերականութեան. Կիրառութիւն մասանցն բանին, որ է Շարամանում ընդ իրեարս բառ քերթողացն։

2. էջ 392, պրակ 1, Ցաղագս Շարամանութեան մասանց բանին,

3. էջ 395, պրակ 2, Ցաղագս Համաձայնութեան անուան ընդ անուան։

4. էջ 421, պրակ 3, Ցաղագս Համաձայնութեան դերանուան ընդ անուան։

5. էջ 435, պրակ 4, Ցաղագս Համաձայնութեան մասնական անուանց ընդ անուան։

6. էջ 442, պրակ 5, Ցաղագս Համաձայնութեան յօդի ընդ անուան։

7. էջ 452, պրակ 6, Ցաղագս Համաձայնութեան պատասխանւոյ ընդ հարցական անուանց։

8. էջ 452, պրակ 7, Ցաղագս Համաձայնութեան բայի ընդ անուան։

9. էջ 472, պրակ 8, Ցաղագս Հոլովառութեան մասանց բանի։

10. էջ 473, պրակ 9, Ցաղագս Հոլովառութեան անուան։

11. էջ 476, պրակ 10, Ցաղագս Առման սեռականի։

12. էջ 486, պրակ 11, Ցաղագս Հոլովառութեան ածական անուանց։

13. էջ 497, պրակ 12, Ցաղագս Զափու շարունակ քանակին։

14. էջ 499, պրակ 13, Ցաղագս Հոլովառութեան բայից ներգործականաց։

15. էջ 523, պրակ 14, Ցաղագս Հոլովառութեան կրաւորական բայից։

16. էջ 530, պրակ 15, Հոլովառութիւն հասարակ բայից։

17. էջ 532, պրակ 16, Ցաղագս Հոլովառութեան ընդմիջական բայից։

18. էջ 560, պրակ 17, Ցաղագս Արգիլեալ խնդրոց։

19. էջ 568, պրակ 18, Վասն Ուղղականին եւն։

20. էջ 574, պրակ 19, Խրատ ճանաչելոյ զմասունսն շարադրեալ բանից։

էջ 598 —601, հետեւեալն գրուածէ,

«Եւ աստ 'ի կատարել երկրորդ հատորիս
«Քերականութեան որ ուսոյց շարակցել զմա-
«սունս բանին ընդ իրեարս բառ կանոնի, կա-

« միմ դարձեալ սկսանիլ 'ի սկզբանէ անտի Քե-
« րականութեան եւ գալ այլ ինձ ոճին մինչեւ
« ցանդ, ուր դարձեալ վերստին եղեւ սկսանիլ
« ճառել զանուանէ զբայէ եւ զայլոցն ։ Եւ յետ
« այնր առել սակաւուկ զկիրառութենէ տա-
« ռից եւ վանկից, բառից եւ բանից, եւ զա-
« զարումն տալ բանիս որպէս եւ Տէր կամեա-
« ցի ։ Եւ Թերեւս ասիցես, (ընդէ՞ր է այս յա-
« ռաջ եւ յետ ընթացումն կամ համառօտ խօս-
« տանալ եւ երկարել), վասն զի զչարագրածս
« զայս՝ Թէպէտ երկար ինձ հաւաքեալ էաք ի
« գրուածոյ, սակայն մինչ սկսաւ ի տպիլ,
« զամենայնն համառօտել կամեցայ որպէս եւ
« անդ խոստացաք, իբրու գլոյժ հարկաւորան
« ուսման եւ զգիւրինան միայն բերելով 'ի յե-
« լումն ։ Ուստի եւ զգիրքն փոքր բանեցի առ
« 'ի դիւրագիր լինել 'ի ծոցի, որ եւ եղի այն-
« պէս մինչեւ ցհինգ մասունսն ։ Բայց զի ի
« կամս մեր չԹողին զմեզ, որոց անպատեհ
« էր մեզ ընդդիմանալ, երկարեցաք սակաւ
« ինչ զմնացեալսն, եւ եդաք զկնի ազդեցու-
« Թիւն ինչ դարձեալ զանուանէ եւ զբայէ եւ
« զայլ երկուցն որ զկնի, եւ մինչ տեսի Թէ
« Թանձրագոյն լինի գիրքս քան զհամեստ չափն
« իւր, եղի ի մտի այլ եւս երկարել՝ եւ եր-
« կուս կազմել առ 'ի լինել դարձեալ ի ծոցի
« կրրելի ։ Եւ Թէպէտ այսպէս, բայց զայս ա-
« մենայն եւ զայլն ամենայն՝ նա որ չարժէ
« զամենայն եւ ոչ չարժի յումեքէ, զվասն էրն
« ինքն գիտելով որպէս եւ կամի այնպէս տայ
« խորհիլ ։ Զի նովաւ կեամք եւ շարժիմք եւ
« եմք, եւ նմա փառք յաւիտեանս, Ամէն ։ »

21․ Էջ 601, պրակ 20, Դարձեալ վե-
րըստին յաղագս Քերականութեան ։

22․ Էջ 605, պրակ 21, Վերստին յա-
ղագս մասանց Քերականութեան ։

23․ Էջ 608, պրակ 22, Վերստին յա-
ղագս տառի ։

24․ Էջ 642, պրակ 23, Յաղագս վան-
կի վերստին ։

25․ Էջ 651, պրակ 24, Յաղագս բա-
ռի վերստին ։

26․ Էջ 661, պրակ 25, Վերստին տե-
սուԹիւն յաղագս բանին ։

27․ Էջ 664, պրակ 27, Յաղագս մա-
սանց բանին այլ ինչ ասուԹիւն ։

28․ Էջ 668, պրակ 28, Յաղագս յե-
տեւմանց մասանց բանին ։

29․ Էջ 671, պրակ 29, Յաղագս կի-
րառուԹեան տառի, որ կոչի յարմարագրու-
Թիւն ։

30․ Էջ 674, պրակ 30, Յաղագս Թէ
որո՞ց վերջն Յով ընել սովոր է ։

31․ Էջ 679, պրակ, 31, Յաղագս Յար-
մարագրուԹեան ։

32․ Էջ 683, պրակ 32, Յաղագս Պա-
տուադրուԹեան ։

33․ Էջ 688, պրակ 33, Յաղագս Հե-
գակագմուԹեան, որ է կիրառուԹիւն վանկի ։

34․ Էջ 703, պրակ 34, Յաղագս Ստու-
գաբանուԹեան, որ է կիրառուԹիւն բառի ։

35․ Էջ 711, պրակ 35, Յաղագս կի-
րառուԹեան բանի ։

36․ Էջ 715, պրակ 36, Յաղագս Վեր-
ծանուԹեան ։

37․ Էջ 719, պրակ 37, Յաղագս Առո-
գանուԹեան ։

38․ Էջ 740, պրակ 38, Յաղագս Տրո-
հուԹեան ։

39․ Էջ 751, պրակ 39, Յաղագս Են-
ԹադրուԹեան ։

40․ Էջ 754, պրակ 40, Յաղագս եր-
կար վանկի ։

41․ Էջ 756, պրակ 41, Յաղագս Սուղ
վանկից ։

42․ Էջ 758, պրակ 42, Յաղագս Պարզ
ստից ։

43․ Էջ 761, պրակ 43, Յաղագս Բարդ
ստից,

44․ Էջ 765, պրակ 44, Յաղագս Տա-
ղից ։

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ

1․ Էջ 767—769. -« Բայց արդ՝ 'ի հասա-
« նելն մեր յայս կէտ, զո՞ր օրհնութիւն կամ
« զոր գոհութիւն մատուսցուք Ամենատեառն ։
« Եւ հատուսցուք զփոխարէնն զԹուԹեան
« ամենազօր բարերարէն ։ Որ ըստ իւրում
« բազում զԹուԹեանն արժանացոյց զանար-
« ժանութիւնս իմ՝ տեսանել զաւարտումն
« տպեցման սորին ։ Որ յիրաւի (առ այն՝ զի
« անհաւատալի է կեանքն մեր) միշտ յերկրպա-
« էի Թէ, տանցեմ (այսպէս) ։ Նա եւս՝ ոչ ե-
« Թէ միայն չարաբանօղն այսմ արհեստի, այլ
« եւ գծօղ սորին յետնագոյն աշակերտաց ա-
« շակերտ Ցռնանենս չնչին գրչիս, եւ եւս
« էի առ այն բանն, (որ ասացն՝ բուն գերա-
« գոյն մակացութեան) Թէ տանիցիմ (այսպէս) ։
« Վասն որոյ փառ(ք) եւ գոհութիւն, օրհնու-
« Թիւն եւ փառաբանութիւն, երկրպագութիւն

«եւ ծառայութիւն պաշտօն եւ պատիւ Անե-
«գին Անսկիզբն Իսկականին, Անծին ծնողին,
«Ծնօղի եւ Պատճառի Ծնեցելոց Բանին, Ա-
«ներբ եւ Անժամանակ գիր անստհման էին՝
«գոյացեալ ի բուն բարութեան, ծնօղ ծոցա-
«ծին Միածնին կենարարին Տն Յի Քի եւ
«բղխօղ՝ Հոգւոյն Ճշմարտի։ Այ Ամենակալի
«Երից Անձնաւորութեան եւ Միոյ Բնութեան
«եւ Համափառ Ածութեան Սբյ Երրորդու-
«թեանն Հօր եւ Որդւոյ եւ Սբ Հոգւոյն յար
«եւ միշտ եւ անվախճան յաւիտենից ամէն։»

2. էջ 770—776. «Վերջաբանութիւն զԳըր-
«քոյս». — Առ բարեմիտ ընթերցօղսդ (կարմ-
«րաւ). — «Ուսումնասէր սիրելեացդ իմոց
«յայտ լիցի, զի յետնագոյն իմն է ամենեցուն՝
«թէ գիտութիւնք Ածայնոց եւ մարդկայնոց ի-
«րողութեանց գրով աւանդեալ են մեզ։ Որոց
«ոչ այլով իւիք՝ քան թէ գրոց ընթերցմամբ
«առ ծանօթանամք։ Իսկ կէտ եւ քանոն ուղիղ
«ընթերցման եւ լաւ իմացման, է արհեստս այս
«Քերականութեան։ Զի որպէս ամենայն ար-
«հեստ թէ ծառայական թէ ազատական՝ ունի
«յինքեան քանոն իմն անսխալ որ ուղղէ զնա
«եւ կարգաւորէ։ Այսպէս որ ինչ գիտութիւն
«գրով վճարի՝ ուղղիչ նմա եւ կարգաւորիչ
«նախ առաջին է քերթողութիւնն, ապա ի-
«րաքանչիւրոյն յատուկ քանոն։ Եւ եթէ այս-
«պէս, հարկ եւ պարտ է ուրեմն ընթերցասի-
«րաց՝ նախ զուղղութիւն ընթերցմանն ուսա-
«նել, եւ ապա նուաճ առ այլս գիտել։ Եւ
«այսու ծանիր զպիտանութիւն այսր արհես-
«տի, որ քանոն ասացաւ ամենայն ուսմանց,
«այսինքն՝ թէ Ածաբանականաց թէ փիլիսո-
«փայականաց եւայլ։ Որոց հետեւողքն թարց
«քերթողութեան՝ ուղիղ եւ հաստատ քայլել
«ոչ կարեն։ Ուստի որ ոք 'ի գիտութիւն գրոց
«այսու դանօս ոչ մտցէ, թէեւ բազում ինչ
«ուսանիցէ եւ գիտիցէ, գրոց աշակերտ ոչ ա-
«նուանի, իբրու ոչ մտեալ ընդ դուռն գիտ-
«նոց եւ ոչ համաթուեցեալ ընդ նոսա ըստ
«իւրում չափուն։ Եւ թէպէտ քերթողու-
«թիւնն առ այլ մեծամեծ ուսմունս համեմա-
«տեալ՝ է փոքր եւ նուազ գիտութիւն ըստ
«ինքեան, սակայն զի դուռն է մտից մեծա-
«մեծ ուսմանց, է պատուական եւ գեր յար-
«գելի, եւ յառաջ քան զայլսն նախընտանա-
«լի։ Որպէս բանալին թէպէտ է փոքր մա-
«նրիկ իմն երկաթեայ, բայց առանց նորին
«համայնքն 'ի գանձին՝ անվայելք մնան։ Այս-
«պէս առանց քերթողութեան որ է բանալի
«ամենայն գրոց, իմացմունքն 'ի նոսա թէ-
«պէտ ոչ ծածկին իսպառ, բայց համայնքն՝
«հաստատ բացայայտել ո՛չ կարեն։ Ուստի ո-
«րովհետեւ այսքան հարկաւորութիւն ունի
«արհեստս այս, եւ ամենայն ընթերցասիրաց
«է ուսանելի, կարեւոր վարկայ առ զանձն
«իմ յաշխատանս, եւ շարադրել զԳրգուկս զայս
«ի շահ ուսումնասէր եղբարց, եւ 'ի փառս
«անուան Փրկչին մերոյ Յի Քի եւ մօր իւրոյ
«միշտ կուսին Մարիամու։

«Գիտելի է սակայն, զի ըստ ասից ումեմն
«հանճարեղի՝ հացն ո՛չ է նկատելի թէ ազ-
«նուակա՞ն ոք արդեօք շաղեաց զնա կամ ե-
«փեաց, թէ ռամիկ ոք անազգի, այլ այն
«միայն է նայելի՝ զի զքաղցն բժշկիցէ։ Այս-
«պէս եւ այս Գրքուկ մի՛ նկատեսցի թէ յում-
«մէ՞ է շարադրեցեալ, որ յետնագոյնն է հե-
«տեւողացն գրոց, եւ աշակերտացն աշակերտ։
«Այլ յայն միայն նկատեսցի՝ թէ զո՞յ արդեօք
«ի սմա օգուտ ինչ լսելոյ եւ ուսանելոյ։ Եւ
«որպէս հաց իմն մինչ ունիցի զտեղի ինչ այ-
«րեցեալ 'ի յեփիլն, ո՛չ այնր վասն չ'ուտեն
«զնա բնաւին որք զքաղցն ունիցին, այլ զայն
«մասնիկն 'ի բաց հատեալ՝ ուտեն զմնացեալն։
«Սոյնպէս եւ ի յայսմիկ շարադրութեան թէ
«անօգուտ ինչ խօսեցայ, կամ թէ սխալեցայ
«եւ ոչ իմացայ, 'ի պատճառս այնց ո՛չ է պատ-
«կան զբոլորն ի բաց ընկենուլ զի ի բոլորումն
«գտանի թերեւս օգտակար ինչ։ Ուստի պարտ
«է մատուցաց՝ զանպիտանն 'ի բաց ընկենուլ
«եւ զօգտակարն առնուլ որ պիտոյն իցէ։
«Երկրորդ՝ մինչ տեսանիցես այնպիսի ինչ
«յայսմ Գրքուկի զոր եւ այլք խօսեալ իցեն
«հնագունեիցն յետոյ, զայնպիսին զամենայն՝
«յայնց մատծեալ գոլ գիտիցես եւ ոչ ի մէնջ,
«թէ եւ կարելի է՝ զի զոմանս ի նոցանէ զա-
«եւ ես խորհեալ իցեմք։ Ասացի՝ (յայնց մատ-
«ծեալ գոլ եւ ոչ ի մէնջ.) սակայն ոչ յայն-
«ցանէ յայնց, եւ ո՛չ ի մէնջն ի մէնջ. այլ ի
«միոյն է ամենայն, եւ նորին է սեպհական,
«որ պարգեւէ՛ եւ տայ որում եւ կամի, յոր-
«ժամ եւ կամի, որքան եւ կամի։ Երրորդ՝
«այնք որք յայլ եւ այլ տեղիս յիշեցան, կամ
«թէ՝ յորոյ վերայ ասելի ինչ մնացեալ, եւ կամ
«յետոյ մատծեալ, զայն ի պատկան տեղւոջ
«դարձեալ յիշեցաք։ Որպէս յերես 165, մո-
«ռացաք ասել յայսցանէ կամ յայսց, որոյ պէս
«եւ այլք գտանին։«

3. էջ 777—780. — Բան առ բարեմիտ
«վերծանօղսդ (կարմրաւ). — «Յայտ լիցի
«խոհեմամիտ եւ բարեբաստ ընթերցողացդ զա-
«սացեալսն վերջաբանութեան Գրքոյս որ ի
«քանոնական արհեստի զամենայն շարակար-
«գեալ է առ յերեսն 770 զգովասանութիւն
«եւ զշահաւէտութիւն նորին լուսահոգի վար-
«ժապետաց վարժապետ գերապատւ Մակացու
«Պաղտասար։ Յորմէ աւել ոչ ինչ կարեմ ա-
«սել Գրքոյս՝ վերջաբանութիւն՝ թէ ի գովու-
«թեան եւ թէ յայտարութեան ի քերթողա-
«կան արհեստին բաւեսցի այն սիրելեացդ խո-
«հեմագոյն մտաց։ Նաեւ հարկ իսկ է ինձ
«յետնագո՛յն աշակերտիս՝ որ բազմագոյն օրի-

«Նախօք զօվարանել զգերապատուելի լուսով
«մակացութեան փայլեցելոյ՝ տհասամիտ բանա-
«սիրացս Ներմայրաքաղաքիս Գերմանիկոյ զՏր
«Ստեփաննոս Վրդն (մակս տկարութեան
«մտացս ոչ բաւ վարկայ զբաղմազոյն գովու-
«թիւն նորին մակացութեան) որ զխակութիւն
«տիոյս կրթեաց նախախնամութեամբ արար-
«չին, զոր եւ ինքն ամենաբարի բնութիւնն
«Ած, տացէ կեանս երկարս եւ ճոխացուսցէ իւր
«անճառ բարութեամբն ի ներկայում ժամա-
«նակացն եւ ապագայից եւ վերջապէս իւր
«անհուն ողորմութեամբն արժանացուսցէ յա-
«ռագաստին պսակեալ փառօք։ Նաեւ զհայր
«նորին Դաւիթ գերիմաստ եւ Ածաբան Վրդն,
«որ պատճառութեամբն իւրոյ վարժեցուցեալ
«զնա լիապէս յաղագս որոյ զմարմնական պի-
«տոյսն լցուցանելով եւ նաեւս պարապեալ
«հետեւելով մինչեւ ցայս վայր։ (Խնդրեմ 'ի
«սրբոյ յաղօթս ձեր յիշեսջիք վարձս բարեաց
«խնդրելով նոցա ի Տնէ)։ Որ 'ի թվին Հայոց
«1214 (=1765) ին եկեալ 'ի Կոստանդնուպօլ-
«սոյ առ ի Գերմանիկ եւ ինքն գոլով ի Բիւ-
«զանդիոյ, նախախնամութեամբն արարչին
«վարժեալ ի նորին նման իւրովին գիս արար
«'ի ամին։ Գոցի յողորմութեան Տն եւ վար-
«ժապետն նորին եւ վարժապետն վարժապե-
«տին մինչեւ ցառաջին սկիզբն նոցին, զի ա-
«ռատ է Տէր ի տուրս բարեաց առ ամենեսին։»

4. էջ 780—782. Ցիշատակարան (Կարմ-
«րաւ)։ — «Եւ արդ՝ յանգ եկեալ աւարտ-
«ցաւ Գիրքս քերականութեան ի թվին
«ՌՄԻԳ (=1774) ին 'ի Հայրապետութեան
«Տանն Կիլիկիոյ Տն Եփրեմի երիցս երանեալ
«Սրբոյն Կաթողիկոսին ամենայն Հայոց։ Եւ
«բարեխօսութեամբ Ս. Մանկանցն որ ի դուռն
«նոցին ի Գերմանիկ քաղաքի։ Հաւսկ յետոյ
«քան զամենեսեան պղտնամիտ չնչին գրչիկս
«թէ եւ վարժեալս որ եմ մեղօք լի։ Իսկ եւ
«լուսատու ակ տհաս մտացս գերապատուելի
«եւ խոհեմամիտ հայրն իմ զՄիւրկօն Քճնյն
«եւ զմայրն իմ զեղիսաբ ընդ այլ ննջեցեալ-
«ովն մեր յիշեսջիք ի Քս Ցս ամէն։ Այլ արդ
«բազում աշխատութեամբ տիւ եւ գիշեր հե-
«տեւելով վարժմամբ ընթեռնլով եւ օրինա-
«կելով այսմ արհեստի քերթողութեան, քան-
«զի հնար ոչ գոյր գրել զաս վասն զբաղմանց
«աշխարհիս եւ տառապանաց աղքատութեան։
«Բայց ուժգին ջանիւ արդիւնաւորեցայ կա-
«մօք Տն իմոյ Ցի Քի, վասն ոգւոյ յանձինս
«իմոյ, եւ սակ յետագայ կենդանեաց իմոց։
«Եւ յիշօղացդ եւ յիշեցելոցն տացէ աղբիւրն
«ողորմութեան զնորումն յանցանաց, ամէն։»
Ցեռամանեայ յորեյոնիւ սա կազմեալ
Սոյն այս մասանց զկոյս թըվկին յարազրեալ
Ռայիւ Զայիւ Կենիւ տառիւք բաղկացեալ
Պարզամտիւ ըմբռնեալ զթիւ դիւր գտեալ։

## 10.

# ՄԱՇՏՈՑ

### ԹՈՒԱԿԱՆԻ ԱՆԾԱՆՕԹ

**ԹՈՒՂԹ** 200 կամ 400 էջք (այժմեան մնացածը)։ **ՄԵԾՈՒԹԻՒՆ** 15×10 հարիւրորդամէթր։ **ԳԻՐ** բոլորագիր, սգեղ եւ անվարժ գրչի գործ։ **ԳՐՈՒԹԻՒՆ** միասիւնակ 12×8 հրդմ. Տեղ տեղ կը տարբերի չափն։ **ԿԱԶՄ** հին արեւելեան, առաջին երկու կողքերն ալ ինկած են։ **ՀԱՆԴԱՄԱՆՔ** լաւ պահուած չէ, վերջէն ալ մի քանի թղթեր եւս ինկած են։ **ՏՈՂՔ** 15 Տեղ տեղ տարբեր են։ **ՆԻՒԹ** Թուղթ պինդ եւ ողորկեալ։ **ՎԵՐՆԱԳԻՐՔ** կարմրաւ են։ **ՑԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ** չիք. հետեւաբար անծանօթ կը մնան ԳՐԻՉ, ՏԷՐ, ԺԱՄԱՆԱԿ եւ ՏԵՂԻՆ։ **ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ**. տեղ տեղ կնիք մը կոխուած է եւ կը կարդացուի «Թաղական խորհուրդ Հայոց Նիկսէի 1884»։

**Մասնանս է ՄԱՇՏՈՑ**

1. **Թղ.** 1ա—22բ, **Կանոնն Մկրտութեան։**
2. **Թղ.** 23ա—23բ, **Կանոնն զկնի է ամաց։**
3. **Թղ.** 23բ—45ա, **Կանոնն պսակի։**
4. **Թղ.** 45բ—50ա, **Կանոնն հաղորդ տալոյ։**
5. **Թղ.** 50բ—72ա, **Կանոնն Թաղման զամենայն ննջեցելոցն։**
6. **Թղ.** 72բ—80բ, **Կանոնն երկրորդ աւուր Այգուց։**
7. **Թղ.** 80բ—95ա, **Կանոնն յորժամ տղայ վախճանի։**
8. **Թղ.** 95ա—98բ, **Կանոնն երկրորդ աւուր Այգուց։**
9. **Թղ.** 99ա—106ա, **Կանոնն հոգեհանգիստ առնելոյ։**

10. Թղ. 106բ—128բ, Աւետարանք Իւղաբերից եւ Բժշկութեան։

11. Թղ. 128բ—132բ, Գանձ Ծննդեան Քի (Գանձի պարբերութեանց գլխագիրք «Մկրտիչ» կը կազմեն)։

12. Թղ. 133ա—137ա, Գանձ Յարութեան Քի (նոյնպէս գլխագիրք «Մկրտիչ» կը կազմեն)։

13. Թղ. 137բ—142ա, Գանձ հաւասար ննջեցելոց։

14. Թղ. 142բ—145բ, Ողբ ի վերայ ննջեցելոց։

15. Թղ. 146ա—152բ, Տաղ զարիպի։

16. Թղ. 153ա—176ա, Կանոնն ջուր աւրհնելոյ Մկրտութեան։

17. Թղ. 176բ—188բ, Կանոնն Խաչ աւրհնելոյ։

18. Թղ. 188բ—199բ, Դարձեալ այս կանոնն կատարի (Խաչի աւրհնութիւն)։

19. Թղ. 200ա—200բ, Տաղ մը գրուած կայ, որոյ շատ տեղերն անընթեռլի են։ Սկիզբն. «Արթունք զուարթունք, Բանին բանաւոր ծիծունք. Գարնան աւետիկ, Դրախտին գոյն զգոյն ծաղկունք, եւն.»

## 11.

## ԳԱՆՁԱՐԱՆ

### ԹՈՒԱԿԱՆՆ ԱՆԾԱՆՕԹ

ԹՈՒՂԹ 227 կամ 454 էջք (այժմեան մնացածը)։ ՄԵԾՈՒԹԻՒՆ 18×13,5 հարիւրորդամէթր։ ԳԻՐ մեծ բոլորագիր, միջին մաքրութեամբ։ ԳՐՈՒԹԻՒՆ, միասիւնակ 13×10 հրմ։ ՏՈՂՔ 16։ ՆԻՒԹ Թուղթ փամփակեայ, ողորկեալ։ ՀԱՆԳԱՄԱՆՔ մաքուր պահուած չէ, սկիզբի թղթերուն մի քանիներու եզերքներն ալ մաշած են։ ԿԱԶՄ հին արեւելեան. առաջին երկու երեսներուն երկու կողքերն ալ ինկած են։ ԶԱՐԴԱԳԻՐՔ են ամէն զանձերու կամ ամէն հատուածոց սկզբնագրերն, բուսական գեղեցիկ. ուղղակի երկու կամ երեք տողերն ալ կարմրաւ են, ինչպէս նաեւ ԳԼԽԱԳԻՐՔ եւ ՎԵՐՆԱԳԻՐՔ կարմրաւ են։ ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ ամէն հատուածոց լուսանցքը բուսական գեղեցիկ։ ՊԱԿԱՍ են սկիզբէն մէկ թուղթ եւ վերջէն բաւական թղթեր։ ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ կը պակսի, հետեւաբար անծանօթ կը մնան ԺԱՄԱՆԱԿԸ, ԳՐԻՉ, ՏԷՐ եւ ՏԵՂԻՆ։ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ. տեղ տեղ կնիք մը կոխուած է, եւ կը կարդացուի, «Թաղ. Խորհուրդ Հայոց Նիկսէի 1884».

**Մասնանն է ԳԱՆՁԱՐԱՆ**

1. Թղ. 2. Գանձ Ս. Ծննդեան Ա. աւուրն, (Թղ. 1 ինկած է)։

2. Թղ. 4բ, Գանձ երկրորդ աւուր Ծննդեան, (Գանձի պարբերութեանց գլխագիրք «Մկրտիչ» կը կազմեն)։

3. Թղ. 7ա, Գանձ Աւետեաց Ս. Ածածնին, Գ. աւուր Ծննդեան, (նոյնպէս գլխագիրք «Խաչատուր» կը կազմեն)։

4. Թղ. 10բ. Գանձ Ե. աւուր Ծննդեան, (նոյնպէս գլխագիրք «Խաչատուր» կը կազմեն)։

5. Թղ. 12ա, Գանձ Զ. աւուր Ծննդեան, (նոյնպէս գլխագիրք «Յովհաննէս» կը կազմեն)։

6. Թղ. 14բ, Գանձ Է. աւուր Ծննդեան, (նոյնպէս գլխագիրք «Խաչատուր» կը կազմեն)։

7. Թղ. 18ա, Գանձ Թլփատութեան Տն մերոյ Յի Քի, (նոյնպէս գլխագիրք «Գրիգոր» կը կազմեն)։

8. Թղ. 21ա, Գանձ Յովանու Կարապետին, (նոյնպէս գլխագիրք «Մկրտիչ» կը կազմեն)։

9. Թղ. 23ա, Գանձ Անտոնի եւ այլ ճգնաւորաց։

10. Թղ. 29բ, Գանձ Թագաւորացն սրբոց։

11. Թղ. 35ա, Գանձ Կիրակոսի եւ Յուղիտա, (նոյնպէս գլխագիրք «Գրիգոր» կը կազմեն)։

12. Թղ. 38ա, Գանձ Տեառնընդ առաջին (նոյնպէս գլխագիրք «Մկրտիչ» կը կազմեն)։

13. Թղ. 40բ, Տաղ Քառասնօրեայ Գալըստեան, ազնիւ։

14. Թղ. 41բ, Գանձ Առաջաւորացն

Նինուէացոց, (նոյնպէս գլխագիրք «Գրիգոր» կը կազմեն)։

15· Թղ· 46ա, Գանձ Սարգսի զաւրավարի եւ որդւոյ նորա Մրտոսի, (նոյնպէս գլխագիրք «Մկրտիչ» կը կազմեն։)

16· Թղ· 49ա, Գանձ սրբոց Ոսկեանց եւ Սուքիասանցն, (նոյնպէս գլխագիրք «Խաչատուր» կը կազմեն)։

17· Թղ· 53բ, Գանձ Ղեւոնդեանց եւ Վարդանանց, (նոյնպէս գլխագիրք «Խաչատուր» կը կազմեն)։

18· Թղ· 57ա, Գանձ Սբ Ժողովոյն հայրապետաց· (նոյնպէս գլխագիրք Աշրիվանեցի կը կազմեն)։

19· Թղ· 63ա, Բուն Բարեկենդանին 'ի Տէր Մխիթարայ (Երեւանեցի), Սկիզբն· «Երգս յաւէժական»։

20· Թղ· 69բ, Գանձ Թէոդորոսի եւ Մերկերիոսի զինուորին, (նոյնպէս գլխագիրք «Գրիգոր» կը կազմեն)։

21· Թղ· 72ա, Գանձ երկրորդ Կիւրակէին, (նոյնպէս գլխագիրք «Գրիգոր» կը կազմեն)։

22· Թղ· 76ա, Գանձ Կիւրղի Եպսին եւ Աննայի մաւրն, (նոյնպէս գլխագիրք «Գրիգոր» կը կազմեն)։

23· Թղ· 78բ, Գանձ երրորդ Կիւրակէին, (նոյնպէս գլխագիրք «Մկրտիչ» կը կազմեն)։

24· Թղ· 81բ, Գանձ Յոհաննու Հայրապետին Եղմյ, (նոյնպէս գլխագիրք «Գրիգոր» կը կազմեն)։

25· Թղ· 84բ, Գանձ չորրորդ Կիւրակէին, (նոյնպէս գլխագիրք «Մկրտիչ» կը կազմեն)։

26· Թղ· 87բ, Գանձ սրբոց Քառասնէից, (նոյնպէս գլխագիրք «Մկրտիչ» կը կազմեն)։

27· Թղ· 90ա, Գանձ հինգերորդ Կիւրակէին, (նոյնպէս գլխագիրք «Մկրտիչ» կը կազմեն)։

28· Թղ· 92բ, Գանձ Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, (նոյնպէս գլխագիրք «Մըկրտիչ» կը կազմեն)։

29· Թղ· 97ա, Գանձ վեցերորդ աւուր Կիւրակէին, (նոյնպէս գլխագիրք «Գրիգոր» կը կազմեն)։

30· Թղ· 101ա, Գանձ Յարութեան Ղազարու· Սկիզբն· «Գոչումն բղձական»։

31· Թղ· 105ա, Գանձ Մաղկազարդին ի Տէր Մխիթարա· Սկիզբն· «Համագոյական»։

32· Թղ· 108բ, Աւագ Հինգշաբթի աւուրն, (Գանձի հատածոց գլխագիրք «Մըկըրտիչ» կը կազմեն)։

33· Թղ· 111բ, Գանձ Ուրբաթուն աւուր, (նոյնպէս գլխագիրք «Խաչատուր» կը կազմեն)։

34· Թղ· 115բ, Գանձ Թաղման Շաբաթու Ճրագալուցին, (նոյնպէս գլխագիրք «Խաչատուր» կը կազմեն)։

35· Թղ· 119ա, Գանձ Յարութեան, (սկիզբն ինկած, նոյնպէս գլխագիրք «Մըկրտիչ» կը կազմեն)։

36· Թղ· 121ա, Այլ գանձ Յարութեան, (նոյնպէս գլխագիրք «Տէրուն» կը կազմեն)։

37· Թղ· 125ա, Այլ գանձ Յարութեան, (նոյնպէս գլխագիրք «Մկրտիչ» կը կազմեն)։

38· Թղ· 127ա, Վեցերորդ աւուրն Յարութեան, (նոյնպէս գլխագիրք «Մկըրտիչ» կը կազմեն)։

39· Թղ· 129բ, Գանձ Նոր Կիւրակէին, (նոյնպէս գլխագիրք «Գրիգորի է» կը կազմեն)։

40· Թղ· 133բ, Գանձ Համբարձմանն Քի Այ մերոյ, (նոյնպէս գլխագիրք «Մըկըրտիչ» կը կազմեն)։

41· Թղ· 137ա, Գանձ Հոգւոյ Գալըստեան ի Վերնատունն, (նոյնպէս գլխագիրք «Մկրտիչ» կը կազմեն)։

42· Թղ· 141բ, Գանձ Սբ Մանկանցն Բէթղէեմի, (նոյնպէս գլխագիրք «Խաչատուր» կը կազմեն)։

43· Թղ· 144ա, Գանձ Տապանակին, (նոյնպէս գլխագիրք «Գրիգորիէ» կը կազմեն)։

44· Թղ· 147բ, Գանձ Վարդավառի Մկրտչի ասացեալ, (նոյնպէս գլխագիրք «Մկրտիչ» կը կազմեն)։

45· Թղ· 150ա, Գանձ Փոխման Ածածնին, (նոյնպէս գլխագիրք «Մկրտիչ» կը կազմեն)։

46· Թղ· 154ա, Գանձ Խաչվերացին

գիչեր, (նոյնպէս գլխագիրք «Յովաննէս» կը կազմեն)։

47. Թղ. 157բ, Գանձ Սրբոյն Գէորգայ զաւրավարին, (նոյնպէս գլխագիրք «Խաչատուր» կը կազմեն)։

48. 160բ, Գանձ Վարագա Սբ Խաչին, (նոյնպէս գլխագիրք «Գրիգորի» կը կազմեն)։

49. 164ա, Գանձ Սբ Առաքելոց ԺԲ աշակերտաց, (նոյնպէս գլխագիրք «Գրիգորի է սա» կը կազմեն)։

50. Թղ. 167բ, Գանձ Խաչ Գիւտին, (նոյնպէս գլխագիրք «Խաչատուր» կը կազմեն)։

51. Թղ. 171ա, Գանձ Մարտիրոսաց հասարակաց, (նոյնպէս գլխագիրք «Խաչատուր» կը կազմեն)։

52. Թղ. 175բ, Գանձ Սրբոց Հրեշտակապետացն, (նոյնպէս գլխագիրք «Մկրտիչ» կը կազմեն)։

53. Թղ. 178բ, Գանձ Համաւրէն Սբ Առաքելոց, (նոյնպէս գլխագիրք «Խաչատուր» կը կազմեն)։

54. Թղ. 183ա, Գանձ Նիկողայոսի հայրապետին, (նոյնպէս գլխագիրք «Գրիգոր» կը կազմեն)։

55. Թղ. 186բ, Գանձ Սրբոց հայրապետաց, ի Տէր Մխիթարա. Սկիզբն. «Վայել է քոյին»։

56. Թղ. 192բ, Գանձ Սրբոյն Յակովբայ, (նոյնպէս գլխագիրք «Մկրտիչ» կը կազմեն)։

57. Թղ. 195բ, Գանձ Իգնատիոսի Ածազգեաց հայրապետի, եւ Պօղիկարպոսի Եպիսկոպոսի, (նոյնպէս գլխագիրք «Գրիգոր» կը կազմեն)։

58. Թղ. 198բ, Կանոն Դաւթի Մարգարէին եւ Յակոբայ Առաքելոյ, (նոյնպէս գլխագիրք «Խաչատուր» կը կազմեն)։

59. Թղ. 202բ, Գանձ սրբոյն Ստեփանոսի նախավկա, (Տանց սկզբնագիրք «Մկրտիչ» կը կազմեն)։

60. Թղ. 206ա, Սրբոց գլխաւոր Առաքելոց Պետրոսի եւ Պաւղոսի, (նոյնպէս գըլխագիրք «Սարգիս եւ Գրիգոր» կը կազմեն)։

61. Թղ. 212ա, Գանձ Որդոց Որոտմանց Յոհաննու եւ Յակոբա, (նոյնպէս գըլխագիրք «Գրիգորի է սա» կը կազմեն)։

62. Թղ. 217բ, Գանձ Բարսեղի Հայրապետի. (նոյնպէս գլխագիրք «Խաչատուր» կը կազմեն)։

63. Թղ. 221ա, Գանձ Թաղման ննջեցելոցն ի վերա գերեզմանին։

64. Թղ. 225ա, Այլ տաղ ծնընդեան, (խազերով). Սկիզբն. «Քս քանըդ հաւր»։

65. Թղ. 225բ, Տաղ սրբոյն Ստեփաննոսի. Սկիզբն. «Ի գաւազանէն յեսսեն»։

66. Թղ. 226ա, Տաղ սրբոյն Սարգսի զաւրաւարին. Սկիզբն. «Վկայից հանդիսից»։

67. Թղ. 226բ, Տաղ Ծաղկազարդին (խազերով). Սկիզբն. «Այս նոր աւետեաց»։

68. Թղ. 227ա, Տաղ հինգշաբթին մեծի (խազերով). Սկիզբն. «Ընդ երեկոյս»։

69. Թղ. 227բ, Տաղ Յարութեան Տն մերոյ Յսի Քսի. Սկիզբն. «Ով կանայք զոր»։



# 12.

## ԿՈՆԴԱԿ

### ՌՄՁԷ=1838

ՄԵԾՈՒԹԻՒՆ 76×47,5 հարիւրորդամէթր· մի թերթ· ԳԻՐ նօտրագիր· ԳՐՈՒԹԻՒՆ միասիւնակ 45,5×33 հրդմ· ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՔ. Ա) պատկերազարդ եւ նկարազարդ է կոնդակս, բայց տգեղ գործ, Բ) վերին ճակատը կնիք մը՝ կոխուած է եւ կը կարդացուի, — «Շնորհիւ Տն Կարապետ Եպս· Կեսարիոյ Սբ Դանիէլի Առաջնորդ»։ — Դ. Կոնդակին քիչ մը պատռած լինելուն ետեւի կողմէն Թղթեր փակցուած են։ ՆԻԻԹ, Թուղթ հաստ եւ անողորկ· ԺԱՄԱՆԱԿ գրութեան ՌՄՁԷ (=1838)· ՏԵՂԻ, Սբ Դանիէլ ի վանս ի Կեսարիա։

**Պարունակութիւնն է**

«ՔԻ ԾԱՌԱՅ ԵՒ ՇՆՈՐՀԻՒ ՆՈՐԻՆ
«ՊԱՇՏՕՆԵԱՅ ՍԲ ԱԾԱԾՆԻ ԵՒ ՊԵՏ ԱՌԱ-
«ՔԵԼՈՑՆ ՊԵՏՐՈՍԻ ԵՒ ՊՕՂՈՍԻ ԱԾԱ-
«ԲՆԱԿ ԽՈՐԱՆԱՑՆ՝ ՏՐ ԿՐԳ" ԱՐՔԵՊՍ.
«Յորմէ ժամանեսցէ ողջոյն փրկչածիր եւ օրհ-
«նութիւն Ածային։ Շնորհք եւ ողօթք Առա-
«քելական՝ եւ Նախախնամական գթութիւնն
«Ամենասուրբ Երրորդութեանն եկեսցէ եւ
«բաշխեսցի առ ի վերայ լուսաւորչադաւան
«սիրազնէիցդ մերոց, որք կայքդ ծաւալեալ
«ի զանազան գաւառս եւ անդորրացեալք Տրն
«խնամով ի քաղաքն, ի դաստակերտս եւ ի գիւ-
«ղօրայս։ Յորս բարեհիմնեալ նախ եկեղեցա-
«կան եղբարց ընտրելոց, այս է Արհիամեծար
«Եպսաց, հոգեշնորհ Րաբունեաց որք վերա-
«տեսչութեան են յանձնեցեալք. քաջաքարոզ
«Վրդց, բարեընտիր Աւագ երիցանց եւ սրբա-
«նուէր Քահանայից, եւս ընդ որովք օրհնեալ
«պաշտօնէից եկեղեցւոյ՝ համաստափայլ Սար-
«կաւագաց, ուսումնասէրանց Դպրաց եւ ամե-
«նայն բարեպաշտօն ուխտի մանկանց եկե-
«ղեցւոյ, այսինքն պատուամեծար երեցփո-
«խանաց, բարեկարգ իշխանաց, եւ հոգեաչ-
«խատ վաճառականաց եւ քրտնաջան արուես-
«տաւորաց, մեծանցդ եւ փոքունցդ, արանցդ
«եւ կանանցդ, ծերոցդ եւ տղայոցդ կեալ ի Քս
«Յս համայն բնիկ քրանոց Ամէն։ Եւ ընդ շնոր-
«հածիր ողջունիս՝ յայտ լիցի Ածասիրութեան
«ձերում, ընթեռնանի յԱծաշունչ գիրս Սիրա-
«քայ, «Լեր որդւն ողորմած իբրեւ զհայր եւ
«եղիցիս դու որպէս որդի բարձրելոյն հնա-
«զանդ, եւ ողորմեսցի քեզ առաւել քան զմայր»
«Արդ՝ համաձայնաձայնեալ բարեգութն Ած գիտե-
«լով զմարդկային սահման բնութիւնն, զեղ
«տառողջութեան հոգւոց՝ զողորմութիւնն հաս-
«տատեաց առ հաւատացեալս իւր, զի այնու-
«ողորմութեամբ հատուսցեն՝ զմեղաց պարտս
«իւրեանց եւ ազատեսցեն զհոգիս, որպէս
«մարգարէն Դանիէլ ասաց առ բազմաստահ ար-
«քայն Նաբուգոդոնոս. Թէ՝ «Զմեղս քո ողոր-
«մութեամբ քաւեսցես»։ Առ այդ է բանն վե-
«րոյիշեալ, Թէ՝ «Լեր ողորմած որդւն իբրեւ
«զհայր, եւ Ած ողորմեսցի քեզ առաւել քան
«զմայր»։ Յայտնի է ամենեցունցդ, որ յա-
«ւուրց Սբ Լուսաւորչի հօրն մերոյ, եւ հրա-
«մանաւ իւր նորուն՝ սկսան շինել զվանօրայս
«վասն կրօնաւորաց՝ արդեամբք եւ ծախիւք իւ-
«րեանց եւ ժողովրդեան՝ մշտակի պաշտամունք
«կրօնաւորաց ի վանօրայս՝ որք զցայգ եւ զցե-
«րեկ ընթերցմամբ սբ գրոց եւ պաշտօնիւք ժա-
«մակարգութեանց եւ սաղմոսերգութեանց եւ
«մատուցմամբ սրբազնասուրբ խորհրդոյ Պա-
«տարագին հանդիսանան առաջի Այ, վճարե-
«ցին զպարտս հաւատացելոց, որպէս մեծահա-
«ւատ Թագաւորք եւ իշխանք . . . զանազան
«տրօք ողորմութեանց եւ յիշատակօք զար-
«դարէին զվանօրայս եւ արդիւնարար Թեմս
«եւ վիճակս կարգեալ վանօրէից, անհոգ առ-
«նէին զկրօնաւորս եւ զվերատեսուչ վանա-
«հայրն, զառ ի մարմնականաց ըստ հրամանի
«Սբ Հայրպցն մերոց։ Այդ է բան սրբազանին
«Պօղոսի, Թէ՝ «Մեր առաւելութիւնն ձեր
«նուազութեան եւ ձեր առաւելութիւնն մեր
«նուազութեան»։ Եւ ասէ, «Եթէ մեք ի ձեզ
«զհոգեւորն սերմանեցաք, ոչ է մեծ՝ եթէ 'ի
«ձէնջ զմարմնաւորսդ հնձիցեմք»։ Եւ առա-
«նոյն առաջին հաւատ եւ սէր ժողովրդեան
«մերում, որ զանազան եղանակաւ ողորմու-
«թիւնս եւ յիշատակս հաստուցանեն։ Յորժամ
«գլխաւոր Աթոռքն մեր կամ Վանք ինչ փոր-
«ձութեամբ իւիք անկեալ եղեն ընդ պարտիւք,
«Ազգասէրն իմստսիկս ընծայեալ ազատիչ ե-
«ղեւ ի բռնութենէ պարտատիրաց։ Եւ այժմ
«Սբ Անապատի եւ Մշու Վանք շրջին խնդրել
«զողորմութիւն, որոց եւ մեք ձեռնտու ե-
«ղաք վկայութեան եւ յորդորանաց Թղթ
«տալով։ Իսկ դոյն ՍԲ ԴԱՆԻԷԼԻ վանս՝ գո-
«լով 'ի սրբազան Թադէոս Առաքելոյն հիմ-
«նաւորեալ սակս նորա հաւատացելոցն (որ-
«պէս մեծ Աւազանն նորա կայ ի մատուռն
«նորա արդ)։ Յետոյ Օչին զեկեղեցին զմեծ-

« Թուոր՝ կից մատուռն կարուցեալ, 'ի ՌՄԽԷ
« (=1798) Թուին հայոց յանձնեցին անարժա-
« նութեանս ըզ Սբ Վանս ։ Ահա քառասուն
« տարին լրանայ, որ չատանայք տրօք ողոր-
« մութեան ուխտաւորաց եւ ժողովրդեան մե-
« րոյ, այլ չորս տարի է, որ ի բոլոր երկիրս
« սով եւ սղութիւն տիրեալ նուազեցան ուխ-
« տաւորք եւ Թուլացան ժողովուրդք, եւ երկ-
« րաշարժութիւնն վերահասեալ զարհուրագոյն
« Թնդմամբ, ներգործեաց աւերութիւնս ոչ
« սակաւ ։ Իսկ եկեղեցին՝ որ 'ի սեպհական մի-
« ճակս սկսեցեալ էր տեսչութեամբ մերով,
« ծախուն եռապատկեալ վասն սրբատաշ քարիւ
« գոլոյն, ըստ բոլորին, անտի եւս բեռն ան-
« կաւ 'ի վերայ իմ ։ Ուստի յօժարեցայք զձեռ-
« նատուն Պետրոս վրդ որդին մեր առաքել
« ողորմածութիւն ձեր՝ յուսալով Թէ զոր մե-
« ծամեծ պարտս Աթոռոյ եւ վանօրէից բառ-
« նալ ոչ դժուարացայք, մեր հայցուածոց
« նպաստ՝ ոչ լինիք դիմադարձ ։ Լսեմք յի-
« րաւի իւրաքանչիւր տեղեաց տառապանս,
« բայց եւ այնք նեղութիւնք տրօք ողորմու-
« Թեան փարատին, որպէս եւ ասացաւ բանն
« Ածային, Թէ «Լեր ողորմած որբոցն իբրեւ
« զհայր, զի եւ Ած առաւել ողորմեսցի քեզ
« իբրեւ մայր»։ Հաստատէ եւ Տէրն Քս յա-
« ւելն «Տուք եւ տացի ձեզ՝ չափ շարժուն
« զեղուն տացեն ի գոգս ձեր»։ Մանաւանդ
« մերն խնդիր՝ է մասն ինչ գոյից ձերոց, որ-
« պէս Թէ կաթիլ ի ծով ։ Ապաքէն խնդրեմ ի
« յԱծասիրութեանց ձերոց, զի զորդեակն մեր
« ողջունաբեր, սիրով ընկալեալ յանուն Տն,
« զՔս առաջիկք ձեզ հիւր, որ ասաց «Որ ըն-
« դունի զձեզ զիս ընդունի»։ Եւ ապա կարեաց
« Սբ Վանիցս եւ նեղութեան կրօնաւորացս
« տեղեկացեալ, ողորմեսջիք ըստ յաջողելոյ
« շնորհացն Այ՝ առնել լիճ մի ի բազում կաթ-
« լաց ողորմութեան ձերոյ, եւ մխիթարել
« զՎրդ որդին մեր ։ Հաւատացեալ էք Սբ
« Գրոց, որ հաստատէ, Թէ՝ «Ողորմութիւնն ի
« մէջ այլ առաքինութեանց՝ է բարձրագլուխ
« եւ իբր իւղ լուսատու ի մէջ լապտերի հա-
« ւատոյ»։ Սա է, որ կատարելագործէ զպա-
« կասութիւնս ուրիշ առաքինութեանց, զոր-
« մէ յիշեցաւ 'ի վեր, որպէս եւ Տէրն ասէ,
« «Աղէ զարժանն իսկ զողորմութիւն, եւ ա-
« հա ամենայն ինչ ձեր սուրբ է»։ սա է որ
« զնմանութիւն որդւոյն Այ զգեցուցանէ հա-
« ւատացելոց, որ առուգի յԱւետարանն ։ Ճառ
« համարեալ զչափս զայս Ածասիրութեան ձե-
« րոյ հաղորդեցարուք հանապազօրեայ պաշ-
« տօնի եւ պատարագի Սրբ Տաճարիս սակս
« քաւութեան մեղաց եւ անդորրութեան կե-
« նաց ձերոց եւ 'ի վախճանի արժանանալ ե-
« րանաւէտ ձայնի Տն, «Եկայք ժառանգեցէք
« զԱրքայութիւնն Այ»։ Ողջ լերուք ընդ խնա-
« մօք բարձրելոյն եւ օրհնեալ ի սրբոյն Դա-
« նիէլի եւ ի մէնջ Ամէն ։
« Գրեցաւ Կոնդակս Օրհնութեան ի ՌՄՁԷ
« (=1838) եւ Դեկտ. 25, ի Սբ Դանիէլի հրա-
« չապայծառ վանան Կեսարիոյ Մեծի ։»



# ՑԱՆԿ

## ՅԱՏՈՒԿ ԱՆՈՒԱՆՑ ՈՄԱՆՑ ՈՐՔ ԳՏԱՆԻՆ Ի ՏԵՏՐԻՍ

*Ուղղագրութիւնք ըստ բնագրին են․ Խաչանիշք իգական անուանք են․*

Վ.



Տ.



Փ.



Ք.



Օ.





# ՑՈՒՑԱԿ

## Հայերէն Ձեռագրաց

**Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻՈՅՆ ԿԵՍԱՐԻՈՅ**

**ԵՒ**

**Ս. ԳԷՈՐԳ ԵԿԵՂԵՑԻՈՅՆ ԳԸՐՇԷՀԻՐԻ**



# Catalogue des Manuscrites Arméniens

**DE L'EGLISE ARMENIENE STE. MARIE À CÉSARÉE**

**ET**

**DE L'ÉGLISE ARMÉNIENE St. GEORGE**

**À**

**KERCHÉHIRE**

# ՑՈՒՑԱԿ
# ՀԱՅԵՐԷՆ ՁԵՌԱԳՐԱՑ
## Ի ԹՈՒՐՔԻԱ

### ՀԱՏՈՐ Ա.
### Կեսարիոյ վիճակ



— ՏԵՏՐ Բ. —

ՑՈՒՑԱԿ ՀԱՅԵՐԷՆ ՁԵՌԱԳՐԱՑ ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ ԵԿԵՂԵՑՒՈՅՆ ԿԵՍԱՐԻՈՅ
ԵՒ ՍՈՒՐԲ ԳԷՈՐԳ ԵԿԵՂԵՑՒՈՅՆ ԳԸՐՇԷԶԻՐԻ

ԿԱԶՄԵՑ
ՏՐԴԱՏ ՎՐԴ. ՊԱԼԵԱՆ
ԱՌԱՋՆՈՐԴ ՀԱՅՈՑ ԿԵՍԱՐԻՈՅ



معارف نظارت جليله‌سنك رخصتيله طبع اولنمشدر

ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ
Տ ԱԳՐ. ԵՒ ՎԻՄԱԳՐ. Գ. ՊԱՂՏԱՏԼԵԱՆ
*14. Սուլթան Համամ ճատտէսի 14.*

1893

ՏՊԱՐԱՆ. ՎԻՄԱԳՐԱՏՈՒՆ, ԿԱԶՄԱՏՈՒՆ, ԵՒ ԳՐԱՏՈՒՆ

**Կ. ՊԱՂՏԱՏԼԵԱՆ**

*14, Սուլթան Համամ ճատտէսի, Կ. Պոլիս, 14*

---

TYPOGRAPHIE, LITHOHRAPHIE, LIBRAIRIE & RÉLIURE

**K. BAGDADLIAN**

*14, Rue Sultan Hamam, Constantinople, 14*

معارف نظارت جليله سنك رخصتيله طبع اولنشدر

# ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԱԽՏԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ

| ԹԻՒ | ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ | ՆԻՒԹ | ԹԵՐԹ | ՄԵԾՈՒԹԻՒՆ | ԳԻՐ | ԹՈՒԱԿԱՆ | ԳՐԻՉ | ՏԵՂԻ | ՏԷՐ |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աւետարան | Մագաղաթ | 265 | 31×22 | Երկաթագիր | 1269էն առաջ | Մեղապարտ Կոզմայ | Թուրք ԱԷ՝ Ռուզանայ | Տէր Կոստանդին Եպս. |
| 2 | » | Թուղթ | 264 | 16.5×13 | Բոլոր գիր | 1479 | Սարգիս Արեգայ | Անծանօթ | Ղազար՝ ի փոխարէն Կարապետ Քահանայի , եւայլք |
| 3 | » | » | 260 | 17×13.5 | » | 1499 | Անծանօթ | Ս. Երուսաղէմ | Յովհան , եւայլք |
| 4 | » | » | 311 | 18.5×13.5 | » | ԺԶ դար | » | Անծանօթ | Անծանօթ |
| 5 | » | » | 284 | 19.5×14 | » | 1561 | Պօղոս Քհ. Քաստորցի | Կեսարիա Կապադովկիա | Ս. Աստուածածնայ Եկեղեցին |
| 6 | Յայսմաւուրք | » | 502 | 38×25 | » | 1610էն առաջ | Անծանօթ | Անծանօթ | » |
| 7 | » | » | 512 | 39.5×26 | » | 1658 | Թորոս ոմն | Կեսարիա | Խոճա Սրանգար |
| 8 | » | » | 524 | 38.5×25.5 | » | 1683 | Յովսէփ Երէց | Յեւրտայ ի դուռն Ս. Սահականնոսի | Տէր Մինաս Քահանայ |
| 9 | » | » | — | — | » | ԺԷ դար | — | — | — |
| 10 | Ճաշոց | » | 410 | 38×28 | » | 1664 | Յովհաննէս Երէց | Գերմանիկ | Մահտեսի Յովհաննէս , փառն Ս. Աստուածածնայ Կեսարիոյ |
| 11—12 | Գանձարան | » | — | 17×13 | » | ԺԷ դար | — | — | — |
| 13 | Կանոնգիրք | » | — | Ութածալ | » | 1670 | Գրիգոր ոմն | Կեսարիա | Ս. Աստուածածին Եկեղեցին |
| 14 | Մեկնութիւն Մատթէոսի Աւետարանի | » | — | Քառածալ | Նօտր գիր | ԺԷ դար | Սարգիս Դրիտացի | — | Գուցէ գրիչն |
| 15 | Քարոզգիրք | » | 540 | 23×15.5 | Բոլոր գիր | 1574էն առաջ | — | — | Զաքարիա Սարկաւագ |
| 16—18 | » | » | — | Մեծ քառածալ | Նօտր գիր | Նոր | — | — | — |
| 19 | » | » | 92 | » » | » | 1764 | Յակոբ Քհ. Աւագեան | Եւդոկիա | Գրիչն |
| 20 | Սաղմոս | » | — | Քառածալ | Բոլոր գիր | — | — | — | — |
| 21 | Մաշտոց | » | — | Ութածալ | » | ԺԶ դար | — | — | — |
| 22 | » | » | — | » | » | 1620էն առաջ | — | — | Ի վերջոյ Գրիգոր Քահանայ |
| 23 | Ժողովածոյ | » | 147 | 15×10 | Նօտր գիր | 1760 | Տ. Յովհաննէս Քահանայ Յեւրտացի | Յեւրտայ | Գրիչն |
| 24 | Աւետարան և Գործք | Թուղթ<br>Մագաղաթ | 358 | 17.5×13 | Բոլոր գիր | 1632<br>1274 | Անծանօթ<br>Թորոս Սարկաւագ | Հալէպ<br>Մեծքար | Սանոս Զուլալի<br>Ներսէս՝ Սպասաւոր բանին |
| 25 | Աւետարան | Թուղթ | 294 | 29×21 | » | 1222 | Յովհաննէս Քահանայ | Սիս , ընդօրինակեալ Ս. Մարինէի տաճարի | Գրիչն |
| 1 | Աւետարան | » | 258 | 19×14.5 | » | 1731էն առաջ | Անծանօթ | Անծանօթ | Անծանօթ |
| 2 | Յայսմաւուրք | » | 646 | 37×26 | » | 1526 | Գաբրիէլ Սարկաւագ | Զէյթուն եւ Երուսաղէմ | Ներսէս Եպս. Գարուն տէր |

## ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

Մեր տոհմային աղքատիկ պատմութեան աննշան ծառայութիւն մը մատուցանելու համար, « ՑՈՒՑԱԿ ՀԱՅԵՐԷՆ ՁԵՌԱԳՐԱՑ Ի ԹՈՒՐՔԻԱ » անուն աշխատասիրութեան Ա. Տետրի հրատարակութեամբ, թէեւ նիւթապէս առ այժմ վնասուած, այլ սակայն աչքի առաջ ունենալով նորա բարոյական շահն եւ օգտակարութիւնն, եւ միւս կողմէն բանասէր ու հնասէր բարեկամաց խրախոյս եւ քաջալերութիւնն, այդ նիւթական վնասուց առջեւ անտրտունջ, ահաւասիկ ՚ի լոյս կ'ընծայեմ Բ. Տետրն եւս, յուսալով միանգամայն, թէ՝ յաջորդ Տետրերն պարբերաբար պիտի հրատարակեմ, երբ մեր կամքէն անկախ պատճառներ յառաջ չը գան:

Յիրաւի՝ Ներկայ Տետրն եւս իւր մէջ կը պարունակէ Եկեղեցական Մատեանք, ինչպէս պիտի տեսնեն, բայց հա՞րկ է միանգամ եւեթ ըսել թէ՝ իւրաքանչիւր Հայերէն Ձեռագիր, թէ՛ եկեղեցական եւ թէ՛ պատմական, ունին իրենց առանձին նշանակութիւնն եւ շահեկանութիւնը, մինչեւ իսկ այդ Ձեռագիրք քայքայուած եւ ցրիւ թղթերով մնացած լինին:

Մեր կողմէն, այսչափ ինչ խօսելէն յետոյ, իւր կարեւորութեանը նկատմամբ, պատիւ ունիմք եւ հարկ կը համարիմք զարդարել այս էջերն Նամակաւ մը, զոր հաճած էր ուղղել մեզ, մեր Ա. Տետրի հրատարակութեան առթիւ, 1892 Հոկտեմբեր 27ին, Ներհուն մատենագէտ եւ հմուտ հնագէտ, Գեր. Տ. Սուքիաս Վրդ. Պարոնեան՝ Քարոզիչ Մանչէստրի:

« Գերապատիւ Վարդապետ.

Ընդունեցայ ի ժամանակին Ձեր առ իս յղած նուէրն՝ Ձեր աշխատասիրութենէն եւ առ իս օրինակ մը ընծայելով: Ձեր այդ ազնուասիրտ մեծարանքն եւ պատիւ անկեղծ շնորհակալեաց պարտք կը դնէ յիմ վերայ, զոր կը փութամ ահա կատարել ամենայն հաճութեամբ յետ զայդ երկն ծայր ի ծայրէ աչքէ անցունելու: Սիրով կատարեցի զայդ ընթերցումն, քանզի եւ ի բնէ հնախօսականաց սիրող եմ. եւ առաւել Գրչագրաց, եւ ես ի բազում ամաց յետէ յեւրոպա գտնուելով, առիթներ ունեցած եմ երբ ի Գաղղիա եւ երբ յԱնգղիա եւ այլուր, հարիւրաւոր Հայերէն Ձեռագրերու հանդիպիլ, եւ ի նոցանէ մեծագոյն մասը ցանկել այլ եւ այլ գրատանց համար, յորոց մին, *Օքսֆորտ*ինը, այժմ ընդ մամլով է, թէպէտ Անգղիարէն:

Ձեր աշխատասիրութիւնը հրատարակութեան տալու փորձն, գուշակելով մանաւանդ անոր բիւր դժուարութիւնները, ամենայն գովեստից եւ խրախուսանաց արժանի է, զի ոչ միայն բանասիրութիւնը կ'օգտուի, այլ եւ կ'օգտուին նոյն իսկ Ձեռագիրք, իբր ի կորստենէ զերծեալք պահպանելու ազգու միջոց մը ռամկին աչքէն: Տա՛յր Աստուած որ յաջողէիք Ձեր խոստացած եւ պատրաստած միւս հատորներն ալ հետզհետէ հրատարակել:

Ի նախաբանին հրաւէր կը կարդամ բանասիրաց, որ երբ դիտողութիւն մը ընեն պատրաստ էք ընդունիլ զայն ամենայն հաճութեամբ: Փափաքելի էր ինձ գէթ յայդ մասին օգտակար լինել Ձեզ, բայց Ձեր խղճամիտ եւ ուշադիր աշխատութիւնն տեղի տուած չէ այդպիսի գէթ նշանաւոր առթի մը: Ինչպէս ըսի ի վեր անդր, շատ Ձեռագիրներ ցանկած եմ եւ ես,

բայց իմ ցանկերուս ձեւը նոյն նման չէ Ձերինին ինչպէս նաեւ Վենետկանին, թէպէտեւ զանազանութիւնն մեծ չը համարուիր: Այդ տարբերութեան պատճառն ալ գլխաւորապէս այն է որ Եւրոպացւոց համար տպագրուած են իմս, որք ընդհանրապէս Հայերէն բնագիրը չեն կարող ընթեռնուլ, պէտք եղած է նոցա համար աւելի պատմական ձեւ տալ, եւ Ցուցակարան-ներուն աւելի ժամանակագրական կարգը դնել:

Ցուցակարանաց վրայ ընկնելով խօսքս, յիշեմ աստ թերեւ անդրադարձութիւն մը զոր ըրի զՁեր գործն ընթեռնլոյս ժամանակ· այն է որ խորհուրդ կուտայի Ցուցակարանաց եւ որ եւ է բնագիր հատուածոց մէջ յաւելուածներ չընել փակագիծներ եւ գծիկներ մտցունելով, թէեւ կը հասկանամ որ ընթերցողին բացայայտութիւն տալու համար է, բայց տաս տեղ ես ինքն կարող չեղայ հաշ իմանալ թէ այդ փակագծեալք հրատարակչի՞ն խօսքն է թէ բնագրին: Կրնայ անկասկածելի առիթներու մէջ միայն այդ փակագիծք գործածուիլ, զոր օրինակ՝ Հայոց թուականաց առջեւ դնել Փրկչական համապատասխանը, (*այսպէս*) բառը, կամ (*ջնջուած*) եւ այլն ըսել: Զայս ի ներքոյ ծանօթութեանց յաւագոյն թուի ինձ...:

Դարձեալ կան մասնաւոր դիտողութիւններ Աւետարանաց, Շարականաց, ճառոց, եւ այդ կարգի Մատենից վրայ, զորս լաւ կ'ըլլար որ ցանկող մը նշանակէր իւր ցանկին մէջ, այնպիսի դիտողութիւններ, յորմէ ճանաչողութիւնն եւ եկեղեցական պատմութիւն եւայլն կրնան օգտուիլ իւրաքանչիւր Ձեռագրի նկատմամբ, կը դիտեմ որ յայդմ նաեւ Վենետկան հրատարակութիւնն պակասութիւններ կ'ընէ: Զայնս մի առ մի բացատրել աստ երկար լինի, բայց կարելի է իւր ընդհանուր կանոնն առնուլ զայս գործնական կանոնը որ պէտք է այդպիսի Գրչագիրները գիտնական եւ խնամով եղած տպագրութեանց, եւ կամ նշանաւոր հին Գրչագրաց հետ բաղդատելով, գտնուած էական տարբերութիւնները նշանակել:

Կրկնելով զիմ շնորհակալիքս եւ զանկեղծ դրուատիս Ձեր գեղեցիկ եւ օգտակար աշխատութեան համար, եւ միանգամայն ի սրտէ յաջողութիւն մաղթելով ձեռնարկութեանդ, մնամ խորին յարգանօքս եւ սիրոյ ողջունիւ

Ձերում Գերապատուութեանդ

*Առօրակից եւ եղբայրակից ի Տէր*

**ՍՈՒՔԻԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ ՊԱՐՈՆԵԱՆ.**

*
* *

Հրապարակաւ յայտնելով մեր խորին շնորհակալութիւնն առ Նորին Գերապատուութիւն, կ'ընդունիմք իւրեն դիտողութիւններն հաճութեամբ, եւ կը խոստանամք յառաջիկային, յաջորդ Տետրերուն մէջ, որք կարեւոր Ձեռագիր մատեանս կը պարունակեն, հետեւիլ այն ուղղութեան, որպէս կը գծէ Գերապատիւ Հայրն:

*Առաջնորդ Հայոց Կեսարիոյ*

**ՏՐԴԱՏ ՎԱՐԴԱՊԵՏ ՊԱԼԵԱՆ**

# ՑՈՒՑԱԿ

# ՀԱՅԵՐԷՆ ՁԵՌԱԳՐԱՑ

## ՏՈՒՐՔ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ ՄԱՅՐ ԽԵԴԻՒԵՑԻՈՒՆ ԿԵՍԱՐԻԱՅ

## Ա

## ԱՒԵՏԱՐԱՆ

**ՉԺԸ = 1269ին ատայ**

ԿԱԶՄ աւետարան ձին, տախտակեայ կաշէպատ, արտաքին երկու երեսներն ալ արծաթապատուած են։ ՆԻՒԹ ընտիր մագաղաթեայ, խիտ մաքուր եւ սպիտակ։ ԹՈՒՂԹՔ 265 կամ 530 էջք։ ՄԵԾՈՒԹԻՒՆ 31×22 հարիւրորդամէտր։ ԳԻՐ երկաթագիր, ընտիր գրիչ եւ միօրինակ, սեւ մելան։ ԳՐՈՒԹԻՒՆ երկսիւնակ, 23×14 հարիւրորդամէտր։ Սիւնակաց միջեւը եղած պարապ միջոցն է 2 հրդմ։ ՏՈՂՔ 20։ ՀԱՆԳԱՄԱՆՔ շատ մաքուր պահուած է։ ՊԱՏԿԵՐ մի հատ. Թղ. 124բ. խաչելութեան պատկեր մըն է 7,5×5,5 հրդմ. մեծութեամբ։ ԽՈՐԱՆՔ հանդերձ մեծ եզերազարդերով. Թուով 4, Թղ. 1ա, Թղ. 78ա, Թղ. 126ա, Թղ. 208ա։ ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ Թուով 204, ամէնն ալ կլորակ եւ գրեթէ միակերպ շինուած, ոսկեզօծ եւ ընտիր։ ԶԱՐԴԱԳԻՐՔ են ամէն գլխոց սկզբնագրերն ։ ԴԱՏԱՐԿ Թղ. 77բ. եւ վերջէն ալ երեք պարզ թղթեր ։ ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ Թղ. 4ա. Թղ. 77ա. Թղ. 125բ. Թղ. 207բ. Թղ. 265բ. եւ արտաքին երեսը արծաթին վրայ ։ ԺԱՄԱՆԱԿ գրութեան ՉԺԸ (=1269) Թուականէն առաջ ։ ԳՐԻՉ մեղապարտ Կոզմա ։ ՏԵՂԻ գրութեան թէեւ նշանակուած չէ, բայց թուի թէ ի Տանն Ռուբենեայ գրուած է ։ ՏԷՐ Տ. Կոստանդին Եպիսկոպոս վերադիտող Տանն Ռուբենեա. ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՔ, ա) Ամէն գլխոց առաջին տողն համակ ոսկով գրուած են, նոյնպէս նաեւ ամէն համարոց սկզբնագրերն գլխագիր ։ բ) Թղ. 1ա. խորանի ներքեւ՝ Հրեշտակի. Թղ. 78ա. խորանի ներքեւ՝ Առիւծի. Թղ. 126ա. խորանի ներքեւ՝ Եզան. եւ Թղ. 208ա. խորանի ներքեւ՝ Արծուի պատկերներն նկարուած են ։ գ) Խորանք, Պատկեր, Եզերազարդք, Զարդագիրք եւ այլն. ճարտար նկարչի գործ են եւ ունին վրձնի կատարեալ փափկութիւնք, եւ որ գունաւոր եւ ոսկեզօծ են ։

**Մատեանս է՝ ԱՒԵՏԱՐԱՆ.**

1. Թղք. 1ա—77ա, Աւետարան Մատթէոսի. սկիզբն. ԳԻՐՔ ԾՆՆԴԵԱՆ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ՈՐԴՒՈՅ ԴԱՒԹԻ. Ընտիր և գունաւոր զարդագիր են ։

2. Թղք. 78ա—125բ. Աւետարան Մարկոսի. սկիզբն. ՍԿԻԶԲՆ ԱՒԵՏԱՐԱՆԻ ՅԻ ՔԻ ՈՐԴՒՈՅ ԱՅ. ՈՐՊԷՍ ԵՒ ԳՐԵԱԼ Է Ի ՄԱՐԳԱՐԷՍ. Նոյնպէս զարդագիր են ։

3. Թղք. 126ա—207բ. Աւետարան Ղուկասու. սկիզբն. ՔԱՆԶԻ ԲԱԶՈՒՄՔ ՅԱՒԺԱՐԵՑԱՆ ՎԵՐՍՏԻՆ ԿԱՐԳԵԼ ԶՊԱ. Նոյնպէս զարդագիր են ։

4. Թղք. 208ա—265ա. Աւետարան Յովհաննու. սկիզբն. Ի ՍԿԶԲԱՆԷ ԷՐ ԲԱՆՆ ։ ԵՒ ԲԱՆՆ ԷՐ ԱՌ ԱԾ ։ ԵՒ ԱԾ ԷՐ ԲԱՆՆ ։ ՆԱ Է. Նոյնպէս զարդագիր են ։

**ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ**

1. Թղ. 4ա. (Օտար գրիչ նոտրագիր). Ով Տէր Պետրոս Աբեղայ, մի մոռանար աղօթից. մեղայ. Տէր Այ մեղայ. մեղայ թշուառացեալս մեղայ ։

2. Թղ. 77ա. (Մատենին գրչէն). Սաղաւարտ սուրբ զԱծածին Սուրբ Եպիսկոպոս վերադիտող ՏԱՆՆ ՌԱՊՆԱ զՏէր Կոստանդին.

եւ զշնորհազարդ կրաւնաւոր զեղբայր նորա Տէր զՅովհաննէս յիշեսջիք ի Քս․ ամենայն որդիք լուսոյ, որ եսուն զսա զգեղեցկաբեր Սուրբ Աւետարանս ի յիշատակ հոգւոյն եւ ծնաւղաց իւրոց․ ամէն։ Այլ եւ զանարժան գրիչս զԿոզմա աղաչեմ յիշել արժանի արարէք եւ Ած ձեզ ողորմեսցի․ ամէն։

3. Թղ. 125բ. (Մատենիս գրչէն)․ Զսրբազան Եպիսկոպոս զՏէր Կոստանդին զառաջնորդ սորա յիշեսջիք ի Քս․ ամէն։ Այլ եւ զմեղապարտ գրիչս զԿոզմա։

4. Թղ. 207բ. (Մատենիս գրչէն)․ ԶԱծապատիւ Եպիսկոպոս զՏէր Գրիգոր վերադիտող ՏԱՆՆ ՓԱՐԶՄԸՆԱՑ եւ զհրաշալի ծերունի եղբայր նորա զՂազար կրաւնաւոր յիշեսջիք ի Քս ամենայն ընթերցողք սորա․ ամէն։ Այլ եւ զմեղապարտ գրիչս զԿոզմա աղաչեմ յիշել եւ Ած զձեզ յիշելոյ արժանի արասցէ․ ամէն։

5. Թղ. 265ա. (Մատենիս գրչէն)․ Փառք Սուրբ Երրորդութեանն յաւիտեանս ամէն․ որ ներեաց մեղաց իմոց եւ զաւրութիւն եղելի եւ թշուառացեալ մատամբ իմով կատարել զսուրբս զայս։

6. Թղ. 265բ. (Օտար գրչի բոլորագիր)․ Ի Թագաւորութեան Հայոց ի յԼԵՒՈՆ ՀԱՐԻՒՐ եւ ի ԺԸՆ (=1269)։ Ես Տէր Սիոնն Առաջնորդ Սուրբ Ոսկոփ ԱՐՔԱԿԱՂՆՈՅՍ, որ վերստին նորոգել զՍբ Աւետարանս․ ի յիշատակ իմն եւ ծնաւղաց իմոց, եւ ամենայն զարմից, բայց դուք ով սուրբ եղբարք, զաք լուսաւորամիտ․ յիշեսջիք ... (ջնջուած բառ մը) զՏէր Սիոնն եւ զծնաւղս նորա ի յաղաւթս ձեր, զի եւ զմեզ եւ զձեզ յիշեսցէ Քս Ած ի գալստեան իւրում եւ նմա փառք յաւիտեանս յաւիտենից․ ամէն։ Նաեւ զարդէ խոցեալս Սարգիս գրիչ․ եւ զՎարդան երգեցողն․ ընկալցի ամենակարողին Ցս իբրեւ զերկուս լումայս այրոյն․ եւ նմա փառք յաւիտեանս։

7. (Արտաքին առաջին երեսը՝ արծաթի վրայ եղած յիշատակարանն է)․ Յշկ է․ Որ Աւետարանս․ Կէսարացի․ Յովհաննէսի․ հանգուցեալ․ Սարգսի որդի․ Մ՛ի Ածաստուրին․ եւ կողակցոյն․ Հռիփսիմէին, ի դուռն․ Կէսարիոյ․ Որ Ածածնա․ եկեղեցւոյն․ եւ իւր ննջեցելոց․ հոգոյն․ Թվին ՌՄԾԷ (=1808)։

Գալոսին Ուռհայեցի, բազում անգամ յարձակեալ էր ի վերայ Ռաբանայ եւ այլոց կալուածոց Թորոս Ա․ Կոստանդեանի, ՌՃԺԴ Թուականին Հայոց։ Ռաբանայ գտանի ի մէջ Անարզաբայ եւ Կիլիկիոյ։ Պակասն տեղեկութիւն մեր ի վերայ Տանն Փարզմընայ, սակայն է Մարզման կամ Փարսման կամ Մէրզպան կամ Մէրզիմէկ գետին յարեւմտակողմն միջնաբերդին Համիլղայի, որ այժմ կոչի Մարզուան կամ Մարտուան։ ԱՐՔԱԿԱՂԻՆ կամ Ակներ՝ է հռչակաւոր վանք Կիլիկիոյ, հանդէպ Սսոյ եւ բացակայ մէկ ու կէս ժամու ի նըմանէ, այժմ է ի չարտ աւերակաց։

## 2.

## ԱՒԵՏԱՐԱՆ

### ՋԻԸ = 1479

ԿԱԶՄ Հին արեւելեան, տախտակեայ կաշէպատ։ ՆԻՒԹ Թուղթ կակուղ եւ ողորկեալ։ ԹՈՒՂԹՔ 264 կամ 528 էջք։ ՄԵԾՈՒԹԻՒՆ 16,5×13 հարիւրորդամէթր։ ԳԻՐ բոլորագիր, միջին մաքրութեամբ եւ սեւ մելան։ ԳՐՈՒԹԻՒՆ երկսիւնեակ 12,5×8,5 հրմ․ սիւնակաց միջեւ եղած պարապ միջոցն է ½ հրմ։ ՏՈՂՔ 22։ ՀԱՆԳԱՄԱՆՔ մաքուր պահուած է։ ԽՈՐԱՆՔ Թուով 4․ Թղ. 2ա․ 75ա․ 125ա․ 204ա։ ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ մեծ ու փոքր նկարներ, Թուով 204, բայց անարժէք։ ԶԱՐԴԱԳԻՐՔ եւ ԹՌՉՆԱԳԻՐՔ են մատենիս ամէն գլխոց սկզբնագրերն։ ԳԼԽԱԳԻՐՔ են կարմիր։ ԳԼ. ՏԱՌ Թղ. 74 եւ 124բ։ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՈՒԹԻՒՆՔ Թղ. 73բ․ Թղ. 203բ․ Թղ. 263։ ԺԱՄԱՆԱԿ գրութեան ՋԻԸ (= 1479)։ ԳՐԻՉ Սարգիս Աբեղայ․ ՏԵՂԻ գրութեան․ անծանօթ։ ՏԷՐ Ղազար՝ ի վայելումն Կարապետ Քահանայի, յետոյ Կարապետ ամն․ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ․ Մատենիս սկիզբէն եւ վերջէն ալ մէյ մէկ Թղթեր պակաս են։

**Մատենիս է՝ ԱՒԵՏԱՐԱՆ։**

1. Թղք. 2ա—73բ. Աւետարան Մատթէոսի։

2. Թղք. 75ա—124ա. Աւետարան Մարկոսի։

3. Թղթ. 125ա — 203բ. Աւետարան Ղուկասու։

4. Թղթ. 204ա — 262բ. Աւետարան Յովհաննու։

### ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ

1. Թղ. 73բ. (Մատենիս գրչէն՝ ի վերջն Մատթէոսի Աւետարանի). Որ Աւետարանչիս բարեխաւսութեամբ Քս Ած ողորմեա գրողիս սորա մեղաւք զառածելոյ սուտ անուն Սարգ. Արղ. եւ ծնաւղին իմոյ։ Քս Ած ողորմեա ի քո միւսանգամ գալստեանն ստացողի Սբ Աւետարանիս Ղազարի։

2. Թղ. 203բ. (Մատենիս գրչէն, ի վերջն Ղուկասու Աւետարանի). Տէր Յս ողորմեա ստացողի Սբ Աւետարանիս Ղազարին իւր ծնաւղացն։

3. Թղ. 263ա. (Մատենիս գրչէն, ի վերջն Յովհաննու Աւետարանի). Փառք . . . Փրկչին եւ յիշատակ գրչին անարժանի եւ մեղաւորի ամէն։ Ի թվիս Հայոց ՋԻԸ (=1479), գրեցաւ Սբ Աւետարանս ձեռամբ անարժան սուտ Աբեղայի, յիշատակ Ղա(զա)րին եւ իւր ծնաւղին եւ ամենայն արեան մերձաւորացն, որ ըստացաւ զսա յիւր հալալ ընչից իւրոց, եւ ես յիշատակ Կարապետ Քահանայիս ի վայելումն անձին իւրոյ, յիշեցէք զեղբայր սորա զէտիկն եւ զիւր ծնաւղսն զհայրն զՊարոն Սողոմոնն եւ զմայրն իւր եւ զայլ արեան մերձաւորսն (այսպէս)։ Դարձեալ աղաչեմ զձեզ ով սուրբ ընթերցաւղ յիշեսջիք ի սբ յաղաւթս ձեր զՊարոն Ղազարն եւ զիս զանարժան զՍարգիս անուն, աղաչեմ անմեղադիր լերուք սխալանաց սորա զի կար մեր այսչափ էր եւ ով զմեզ յիշէ Ած զինքն յիշէ յիւր արքայութիւն. ամէն։

4. Թղ. 263բ. (Այլ գրիչ). Փառք Փրկչին եւ յիշատակ Կարապետին ի թվիս Հայոց ՋՀԲ (=1523), ես Կարապետս որ ըստա(ցա)յ զԱւետարանս յիշատակ Ըապանշին եւ իւր ծնաւղին Տղայ պարոնին, եւ կողակցին իմոյ Դունեային եւ զաւակին իմոյ Նունուրին, եւ ամենայն արեան մերձաւորացն, որ ստացաւ զսա ի հալալ ընչ(ից) իւրոյ ի անձին իւրոյ, յիշեցէք զեղբայր սորա զԱւագ պարոնն եւ զայլ արեան մերձաւորսն։ Դարձեալ աղաչեմ զձեզ ով որ ընթերցող յիշեսջիք յաղաւթս ձեր Ըապանշան եւ զիս անարժանս յիշեցէք եւ Ած զձեզ յիշէ յիւր արքայութիւն. ամէն։

## 3.

## ԱՒԵՏԱՐԱՆ

**ՋԽԸ = 1499**

ԿԱԶՄ հին արեւելեան, տախտակեայ կաշէպատ եւ արտաքին երկու երեսներն արծաթապատուած։ ՆԻՒԹ փոքր ինչ դեղնագոյն թուղթ, ողորկեալ։ ԹՈՒՂԹՔ 260 կամ 520 էջք։ ՄԵԾՈՒԹԻՒՆ 17×13,5 հարիւրորդամէթր։ ԳԻՐ բոլորագիր, միջին մարութեամբ եւ սեւ մելան։ ԳՐՈՒԹԻՒՆ երկսիւնեակ 13×9 հրմ. երկու սիւնակաց միջեւը եղած պարապն միջոցն է ½ հրմ։ ՏՈՂՔ 22։ ՀԱՆԳԱՄԱՆՔ շատ լաւ եւ շատ մաքուր պահուած է։ ՊԱՏԿԵՐՔ թուով 4. Թղ. 3բ. Մատթէոս. Թղ. 74բ. Մարկոս. Թղ. 124բ. Ղուկաս. եւ Թղ. 201բ. Յովհաննէս Աւետարանիչք։ ԽՈՐԱՆՔ թուով 4. Թղ. 4ա. Թղ. 75ա. Թղ. 125ա. Թղ. 202ա։ ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ փոքր եւ մեծ նկարք եւ ծաղկէնկարք թուով 204։ ԶԱՐԴԱԳԻՐՔ են ամէն գլխոց սկզբնագրերն. եւ երբեմն գործածուած է ԹՌՉՆԱԳԻՐՔ կարմիր եւ կապոյտ։ ԳԼԽԱԳԻՐՔ կարմրով են։ ԳԱՏԱՐԿ Թղ. 1ա—2ա. Թղ. 120ա. Թղթ. 258բ — 260բ։ ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ Թղ. 257բ. Թղ. 258ա, եւ արծաթի վրայ։ ԺԱՄԱՆԱԿ գրութեան Ջ եւ ԽԸ (=1499)։ ԳԻՐՉ անծանօթ։ ՏԵՂԻ գրութեան ի Սուրբ քաղաքն Երուսաղէմ ի Ս. Աթոռն Տեառն եղբաւր։ ՏԷՐ Յարայն, յետոյ Պետրոս կրաւնաւոր. եւ այժմ Ս. Աստուածածնայ եկեղեցին Կեսարիոյ։ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՔ. Մատենիս սկիզբն եւ վերջն երկուքական Մագաղաթեայ թերթեր կան երկաթագիր գրուած Աստուածաշունչի հատուածք։ (Տես ընդօրինակութիւնն վարը)։

**Մատենս է՝ ԱՒԵՏԱՐԱՆ։**

1. Թղթ. 2բ — 3ա. Ցանկ եւ Նախադրութիւն Մատթէոսի։

2. Թղթ. 4ա—72բ. Աւետարան Մատթէոսի։

3. Թղթ. 73ա — 74ա. Ցանկ եւ Նախադրութիւն Մարկոսի։

4. Թղթ. 75ա — 122բ. Աւետարան Մարկոսի։

5. Թղբ. 123ա—124ա. Ցանկ և Նախադրութիւն Ղուկասու։

6. Թղբ. 125ա—199բ. Աւետարան Ղուկասու։

7. Թղբ. 199բ—201ա. Ցանկ և Նախադրութիւն Յովհաննու։

8. Թղբ. 202ա—257ա. Աւետարան Յովհաննու։

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ

1. Թղ. 257բ. (Գլխաւոր Յիշատակարան). Փառք Փառաւորեալ Համագոյ և Միաստական Սբ Երրորդութեանն Հաւր և Որդւոյ և Հոգոյն Սրբոյ յամենայն արարածոց ամէն։ Արդ՝ գրեցաւ Ածային Սբ Աւետարանս, ի Սբ քաղաքն Երուսաղէմ, ի Սբ Աթոռս Տն Եղբաւրն, որ այժմ է վանք Հայոց Ազգին, ընդ հովանեաւ յամենայնիս, շնորհալից և գեղեցկայարմար Սբ Յակոբայ Տեառնս, և այլ Սբ Տնօրինականացս որ կան ի Սբ Քաղաքս Երուսաղէմ, ի Թուականութեանս Հայոց, Չ և ԽԸ (=1499) ամի։ Ստացաւ զսա Քաւսէր և երկիւղածն Այ Ցարուպն ի հալալ ապրանացն, և եդ յիշատակ իւր և կենակիցն Մարուլիկն ի զեղն Խանձառն, յիշատակ բարի հոգոյ իւրոյ և ծնողաց իւրոց։ Արդ՝ աղաչեմ զմանկունս Սբ Եկեղեցւոյ որք վայելէք յԱծային նշանակս, յիշեսջիք ի սբ և ի մաքրափայլ յաղաւթս ձեր առաջ զեղղոյն Քսի զՑարուպն և զիւրս կենակիցն և զծնաւղսն իւր և զամենայն արեան մերձաւորս, և Ած ողորմի ասացէք և ձեզ Թողութիւն խնդրեցէք, ամէն, և ով ողորմի աս.... (բուրր ինկած էր)։

2. Թղ. 258ա. (Այլ գրիչ բոլորագիր). Փառք Միաստական Սբ Երրորդութեանն ամէն. զիւրջին կազմող Սբ Աւետարանիս Քաւսէր և երկիւղածն Այ զՊետրոս կրաւնաւորն, որ ը(ս)տացաւ զսա ի հալալ արդեանց յիշատակ իւր և ծնողաց իւրոց, հաւրն Կարապետին և մաւրն Դինարին, և Յովհաննէսին և Կուզաշանային և ամենայն արեան մերձաւորաց նորին և եդ յիշատակ ի դուռն Սբ Ածածնին, որ կարդան հանապազ և Ած ողորմի տան յիշատակին և կազմողին և գրողին ի թվին ՌԻ (=1571)։ Ի յայսմ ամի Ազգն Թուրքաց գնաց զաւրաւքն ի Կիպրոս կղզոյն վրայ։

3. (Արծաթին վրայի յիշատակարանն է)։ Ծնցւ. արծաթապատ. Սբ. Աւետարանս. ընծիւք Մնեաս Աղայի զանձանակին. ի վայելումն եկեղեցւոյ Սբ Ածածնին. ի թվին ՌՃԻԵ (=1676) ամին. յիշատակ է Ածածնին Կեսարիայ Կապադովկին։

Մատենիս կողքի ներքին երեսներն զանուած մագաղաթեայ թղթերէն ընդօրինակուած են հետեւեալ հատուածք։

Մի եփէ զաւրն աննայն ննրիկից նր նէրիկ զէրիր, միրէ աւիցէ կաւն ցըռուշն, զի կաա, զի ոչ զաւրծէա, չիմ ֆռ ձէոֆ, միրէ աւիցէ ուսէղծուածն յուսէղծից իւր բէ ըննէր այապէս ըասէղ....։

Եւ աւէ Տր զՄովսէս ով էս բէրան մարդոյ կամ ով արար զհուլ և զհամրր, զաւսանին և զկոյրն ոչ ապաքէն էս Ած։ Եւ արդ էրթ և էս բացից զբէրան ֆռ, և խէլամուս արարից զքէզ զոր պարտ իցէ խաւսէալ. և աւէ աղաչէմ զքէզ Տր առ ֆէզ ի ձէռն զայր ոֆ զաւր....





# ԱՒԵՏԱՐԱՆ

## ԺԶ. ԴԱՐ

ԿԱԶՄ արեւելեան. տախտակեայ կաշեպատ, կազմի արտաքին երկու երեսներն զարդարուած են։ ՆԻՒԹ Թուղթ, կակուղ եւ փայլուն։ ԹԵՐԹՔ 311 կամ 622 էջք։ ՄԵԾՈՒԹԻՒՆ 18,5×13,5 հարիւրորդամետր։ ԳԻՐ բոլորագիր, խիտ մաքուր եւ սեւ մելան։ ԳՐՈՒԹԻՒՆ երկսիւնակ 10,5×8 հրմ. Սիւնակաց միջեւը եղած պատարկ միջոցն է 1 հրմ։ ՏՈՂՔ 21. ՀԱՆԴԱՄԱՆՔ մաքուր պահուած է։ ՊԱՏԿԵՐՔ Թուով 19։ ԽՈՐԱՆՔ Թուով 14։ ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ Թուով 198. բուսական մեծկակ նկարներ եւ ծաղկէնկարներ են։ ԶԱՐԴԱԳԻՐՔ եւ ԹՌՉՆԱԳԻՐՔ են ամէն գլխոց սկզբնագրերն։ ԳԼԽԱԳԻՐՔ համակ ոսկի։ ԴԱՏԱՐԿ Թղ. 1ա—2բ. Թղք. 28. 115բ. 116ա. 167. 250, եւ պատկերաց առաջին էջերն։ ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ չունի։ ԺԱՄԱՆԱԿ գրութեան՝ հաւանականապէս ԺԶ. դար։ ԳՐԻՉՆ. ՏԵՂԻ գրութեան եւ ՏԷՐՆ անծանօթ։ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ Մատենիս սկիզբն եւ վերջն երկուքական մագաղաթեայ Թղթեր կան Եւրոպական գաթագիր գրով գրուած։ բ). Զորից Աւետարանաց առաջին՝ նաեւ ամբողջ 19 պատկերաց Թղթերն մագաղաթեայ են։

**Մատենս է՝ ԱՒԵՏԱՐԱՆ**

1. Թղք. 30ա. Աւետարան Մատթէոսի. սկիզբն. ԳԻՐՔ ԾՆՆ. զարդագրով են։

2. Թղք. 113բ—115ա. Նախադրութիւն և Ցանկ Մարկոսի։

3. Թղք. 117ա. Աւետարան Մարկոսի. սկիզբն. ՍԿԻԶԲՆ զարդագրով։

4. Թղք. 165բ—166բ. Նախադրութիւն և Ցանկ Ղուկասու։

5. Թղք. 169ա. Աւետարան Ղուկասու. սկիզբն. ՔԱՆԶԻ ԲԱ. զարդագրով։

6. Թղք. 248բ—249բ. Ցանկ և Նախադրութիւն Յովհաննու։

7. Թղք. 252ա. Աւետարան Յովհաննու. սկիզբն. Ի ՍԿԶԲԱՆ. զարդագիր։

**ՊԱՏԿԵՐՔ**

1. Թղ. 3բ. Աւետումն Հրեշտակի։ 2. Թղ. 4ա. Երկրպագութիւն Մոգուց։ 3. Թղ. 5բ. Քառասնօրեայ Գալուստն Քրիստոսի ի Տաճարն։ 4. Թղ. 6ա. Մկրտութիւն Քրիստոսի։ 5. Թղ. 7բ. Այլակերպութիւն Քրիստոսի։ 6. Թղ. 8ա. Յարութիւն Ղազարու։ 7. Թղ. 9բ. Գալուստն յԵրուսաղէմ ի վերայ աւանակի։ 8. Թղ. 10ա. Ընթրիք ի վերնատան։ 9. Թղ. 11բ. Ոտնլուայ։ 10. Թղ. 12ա. Մատնութիւն Քրիստոսի։ 11. Թղ. 13բ. Խաչի ճանապարհ։ 12. Թղ. 14ա. Խաչելութիւն Քրիստոսի։ 13. Թղ. 15բ. Ս. Յարութիւն Քրիստոսի։ 14. Թղ. 16բ. Գալուստ Հոգւոյն Սրբոյ։ 15. Թղ. 17ա. Վերջին դատաստան։ 16. Թղ. 29բ. Մատթէոս Աւետարանիչ։ 17. Թղ. 116բ. Մարկոս Աւետարանիչ։ 18. Թղ. 168բ. Ղուկաս Աւետարանիչ։ 19. Թղ. 251բ. Յովհաննէս Աւետարանիչ։

**ԽՈՐԱՆՔ**

Թղք. 18բ. եւ 19ա. Խորանք Եւսեբեայ, թուով 2։ Թղք. 20բ.—27ա. Խորանք համաձայնութեան, թուով 8։ Թղ. 30ա. Խորան մեծ Եզերազարդով. եւ Թղ. 117ա. Թղ. 169ա. Թղ. 252ա. նոյնպէս, թուով 4. ընդ ամէնն 14 խորանք։

Պատկերք, Խորանք, Լուսանցազարդք, Զարդագիրք եւ Թռչնագիրք գունաւոր են եւ ոսկեզօծ, ճաշակաւոր գեղարուեստք, ճարտար նկարչի գործ են եւ ունին վրձինի փափկութիւնք։



## 5.

# ԱՒԵՏԱՐԱՆ

**ՌԺ = 1561**

ԿԱԶՄ աւետարան տախտակեայ կաշէպատ․ ՆԻՒԹ անդորկ ողորկ թուղթ․ ԹԻՒՂԹՔ 284 կամ 568 էջք․ ՄԵԾՈՒԹԻՒՆ 19,5×14 հարիւրորդամէթր․ ԳԻՐ բոլորագիր, մաքուր եւ սեւ մելան․ ԳՐՈՒԹԻՒՆ երկսիւնակ 11×9 հրդմ․ սիւնակաց միջեւք եղած դատարկ միջոցն է 1 հրդմ․ ՏՈՂՔ 22․ ՀԱՆԳԱՄԱՆՔ բաւական մաքուր պահուած․ ԽՈՐԱՆՔ թուով 14․ Եւսեբեայ․ Համաձայնութեանց եւ չորից Աւետարանաց․ ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ թուով 200․ ԶԱՐԴԱԳԻՐՔ եւ ԹՌՉՆԱԳԻՐՔ են ամէն գլխոց սկզբնագրերն․ ԳԼԽԱԳԻՐՔ կապոյտ եւ կարմրաւ են․ ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ Չորից Աւետարանաց վերջերն եւ Թղ․ 283 գլխաւոր յիշատակարան․ ԺԱՄԱՆԱԿ գրութեան ՌԺ (=1561)․ ԳՐԻՉ Փօղոս Քահանայ Քասողանցի․ ԾԱՂԿՈՂ նոյնն․ ՏԵՂԻ գրութեան․ Կեսարիա Կապադովկեցւոց, ընդ հովանեաւ Ս․ Աստուածածնայ եւ այլն․ ՏԷՐ Պարոն Խութլուշան, վասն Ս․ Աստուածածնայ եկեղեցւոյն Կեսարիոյ․ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՔ, Խորանք, եզերազարդք, Զարդագիրք եւ այլն կարմրաւ եւ կապոյտ են․ սակայն անվարժ ձեռաց գործ ․

**Մասունք է՝ ԱՒԵՏԱՐԱՆ.**

1․ Ցանկ և Նախադրութիւն Մատթէի, և Աւետարան Մատթէի․

2․ Ցանկ և Նախադրութիւն Մարկոսի, և Աւետարան Մարկոսի․

3․ Ցանկ և Նախադրութիւն Ղուկասու, և Աւետարան Ղուկասու․

4․ Ցանկ և Նախադրութիւն Յովհաննու, և Աւետարան Յովհաննու․

### ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ

1. (Ի վերջն Մատթէոսի Աւետարանին գրեալ). Պարաւանելւոյդ որ հարց մեր եւ եղբարց, հօրս եւ մօրս, Պաւղոս յանցաւորս, գրող սորա, եւ ծաղկողս, պաղատիմ, յիշել զմեզ մերայնովքն ի բարին Քս եւ Ած զձեզ յիշացէ․

Մատթէոս մարդ վասն յուդաւ,
Զի զմարդկութիւն Տն սկսաւ,
ՑԱբրահամէ պատմել կարգաւ,
Եւ զոր արար մինչեւ յարեաւ․

2. (Ի վերջն Մարկոսի Աւետարանին գրեալ).
Իսկ Մարկոսի ասի առիւծ,
Զի սրբաճէմ է չէ պծուծ,
Երագ յորսային ընթանէ բուծ,
Նոյնպէս արար զբանս իւր խծուծ․

3. (Ի վերջն Ղուկասու Աւետարանին գրեալ).
Այլ թէ զՂուկաս եզն գրեցին,
Զի նա թիկամբ հերկէ զգետին,
Կրկին անխափան վասն պտղին,
Նոյնպէս երկար են բանք սորին․

Զմեղապարտ ծառայից ծառայս զՊաւղոս յանցաւոր եղկելիս տարաամ եւ փցուն գրիչս յիշեցէք ի Քս Ած ․

4. (Ի վերջն Յովհաննու Աւետարանին գրեալ).
Իսկ Յովհաննէս արծուանման,
Թռեաւ մտաւք անհասական,
Առ ի պատմել զէակն բան,
Զանձառ էլցս հանրական (1) ․

Թղ. 283. (Գլխաւոր յիշատակարան). Փառք... գրեցաւ եւ ծաղկեցաւ եւ զարդարեցաւ Ածաբուխ Սբ Աւետարանս Քսի, ձեռամբ բազմամեղ եւ փծուն անիմաստ եւ անպիտան գրչի Պաւղոսի Քասողանցւոյ, ի Թվականիս Հայոց ի յՌԺ (=1561)․ Ի քաղաքս Կեսարիա Կապադովկեցւոց ընդ հովանեաւ Սբ Ածածնին, եւ Սրբոյն Սարգսի զաւրաւորին եւ որդւոյ նորա Մարտիրոսին եւ Սրբոյն Մերկերիոսի զինաւորին, եւ այլ բազմահաւաք սրբութեանց, ի յինքնակալութեան այժմ հաւատոյս Տ․ Յովանէս սրբազնեալ Արքեպիսկոպոսի․ Ի յայսմ ժամանակիս ցանկացող եղեւ Ածային Սբ Աւետարանիս ի բարի յարմարոյ ծննդոյն եւ Ածային աւրհնութեամբ անունն Պարոն Խութլուշան, եւ բառացաւ Սբ Աւետարանս յիշատակ իւր եւ կողակցին իւրոյ Խարուն Մամիկին եւ ծնաւղացն նորին ի Աշխէի Ղարիպին եւ մաւրն Սառային եւ մեծ պապուն Էշիլին եւ կենակցին Սիրմային, եւ Մարգարէին եւ Ցիւմիշին, Խաւփին․ Դարձեալ եւ

(1) Ոտանաւոր բանեն բնագրին մէջ ուղղակի գրեալ էին ․

եղջն յիշատակ անջնջելի ի դուռն Սբ Ածածնին, որ կարդան հանապազ և Ած ողորմի ասեն։ Քահանայք և Սարկաւագունք խնամով պահեցէք, և զատապարեալ բանեցէք, զի և դուք ամենայնք վարձս Քոէ Այ մերոյ։ Դարձեալ լսեցէք Քահանայք և ժողովուրդք, որ չունի ոք իշխանութիւն ոչ յիմոցն և ոչ յատարացն հանել զՍբ Աւետարանս ի դրանէ Սբ Ածածնին, կամ գրաւելով կամ ծախելով ջանայ, ինքն իւրովքն եղջէ յարքայութենէն, և մասն և բաժին զԹուդայի և զխաչահանուացն ընկալցի, և խնամով պահողքն աւրհնին յԱյ և ամենայն սրբոց, ամէն։ Յիշեցէք ի Քս զաւաւցին իմ բզԱծատուր Մրշեցի եպս, որ բազում աշխատութեամբ մնաց և ուսոյց զիս ի գործս այս արհեստի, հասուցէ նմա Տր Ած զերկնից արքայութիւնն և զանպատում ուրախութիւն ամէն։ Նաև զմարմնաւոր ծնաւղս իմ զհայրն իմ զԿոնանն և զմայրն իմ զԹանսուսն, և զմեծ մայրն իմ զԹանսուսն և զեղբայրն իմ զՑակոբն և զքոյրն իմ զՓաշայն զփոխեցեալն առ Քս և զկենդանիքն իմ զՄսիկհասն և զդստերս մանկունս զԱրիզմանն և զԲախդասարն, զկենդանիս և զհանգուցեալս ի Քս Ած, և որ յիշէ յիշեալ լիցի առաջի Այ։ Կրկին աղաչեմ Ած ողորմի ասացէք անարժան իմս Միկիտանին, որ աշխատեցաւ ի կրկին թղթիս, վարձս Այ առցէ. ամէն։ Դարձեալ յիշեցէք ի Քս զեղբարքն իմ զՇիրինն զՀազարչանն, և զդուստրն իմ զՏովչար և բզՄարգարէն և զՍառան, և զդստերսս Թումն իմ զՀազարչան և համաւրէն էշիշենց ննջեցելոցն հոգոյն Ած ողորմի ասացէք և ինձ անպատուր անարժան Պաւղոս Քահանայի, և որ զմեզ յիշատակէ մեով Ած ողորմեայիւ, և ինքն յիշեալ լիցի առաջի դատաստանին Քսի. ամէն։

Ս. Աստուածածին և Ս. Սարգիս երկու եկեղեցիքն Կեսարիոյ, վեց դարու հնութիւն ունին թէև բազում անգամ նորոգեալ։ 34 տարի առաջ նոր շինուեցաւ ի Կեսարիա յանուն Ս. Լուսաւորչայ եկեղեցին, այժմ կան քաղաքիս մէջ երեք եկեղեցիք գմբէթաւոր և պայծառ, մանաւանդ Ս. Աստուածածնայ Մայր եկեղեցին, իւր մեծութեամբ և պայծառութեամբը յառաջնակարգ կը համարուի։ Ս. Մերկերիոս վանք մըն էր՝ Կեսարիոյ արևելակողմն $^1/_2$ ժամ հեռաւորութեամբ, այժմ աւերակ, որոյ միայն հիմերն կ'երևին։ Տարին անգամ մը, յիշեալ Սրբոյն տօնախմբութեան օրն, Կեսարիայէն և շրջակայ գիւղերէն բարեպաշտք ամենք, բաւական բազմութեամբ, կուգան յուխտ և յերկրպագութիւն։ Քահանայ մը կ'երթայ և համառօտակի աղօթք և մաղթանքներ ևս կը կատարէ։

## 6.

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

**ՌԾԹ = 1610 էն առաջ**

ԿԱԶՄ արևելեան, տախտակեայ կաշէպատ։ ՆԻՒԹ թուղթ պինդ, ողորկեալ։ ԹՈՒՂԹՔ 502 կամ 1004 էջք։ ՄԵԾՈՒԹԻՒՆ 38×25 հարիւրորդամէթր։ ԳԻՐ բոլորագիր, միջին մարմնով։ ԳՐՈՒԹԻՒՆ երկսիւնակ, 30×17.5 հրմ. Սիւնակաց միջեւը եղած դատարկ միջոցն է 1.5 հրմ։ ՏՈՂՔ 37։ ՀԱՆԴԱՄԱՆՔ բաւական մաքուր պահուած է։ ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ են նկարք, ամենայն յայտնաւորաց լուսանցքը։ ԶԱՐԴԱԳԻՐՔ և ԹՌՉՆԱԳԻՐՔ են ամէն գլխոց սկզբնագրերն։ ՎԵՐՆԱԳԻՐՔ և ԳԼԽԱԳԻՐՔ կարմրով են։ ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ բազմաթիւ են, ամենայն յայսմաւուրքէն յետոյ, մանաւանդ թղ. 502ա. երեսն հոս օտար գրչէն. Գլխաւոր յիշատակարանն կը պակսի։ ԺԱՄԱՆԱԿ ՌԾԹ (=1610)էն առաջ։ ՏԷՐ Խօճայ Պաղպանս վասն Ս. Ածածնայ եկեղեցւոյն Կեսարիոյ։ ԳՐԻՉ և ՏԵՂԻ գրութեան՝ անծանօթ։

**Մասնաւոր է՝ ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ**

Որ կը պարունակէ մեր Հայկական Տօնացոյցի համեմատ ամէն սրբոց վկայաբանութիւնքն և յիշատակութիւններն, բաց ի գրութեանց այս ու այն մասին և կարգին ընդարձակութենէ կամ համառօտութենէ, կարգերն և այլն համեմատ են 7 Յայսմաւուրքին հետ, երես 52։

### ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

1. Թղ. 502ա. (Այլ գրիչ բոլորագիր). Փառք... Արդ՝ կազմեցաւ վերջին կազմ ի քաղաքս Կեսարիա ի դուռն Սբ Աստուածածնին եւ Սբ Սարգսի զինուորին եւ որդւոյն նորա Մարտիրոսին, եւ Սբ Մերկերիոսի զինուորին եւ այլ բազում հաւաքեալ սրբոցն. ի թվին ՌԾԹ (=1610), ձեռամբ եղկելի եւ թշուառական գերոյս տեառ անուն... (անընթեռնլի եղած է) Քահանայիս, որ եմ մեղաւք ապականեալ. եւ աղաչեմ զամենեսեան, որ յի բերանով Ած ողորմի ասէք Ոսկան Պաղպանէին, որ բազմացաւ զայս ծառս Մարտիրոսաց ի հալալ ընչից իւրոց եւ եդիր յիշատակ ի դուռն Սբ Աստուածածնին յիշատակ իւր եւ հայրն Քոչակին եւ մայրն Զինէ, եւ կողակցին նորա Ըլեղուխին եւ Թուրվանէին եւ որդւոյն... (անընթեռնլի մը սրբուած է) Սգանդարին եւ տէր Ած փոխեալ... (անընթեռնլի մը եւս սրբուած է) Սուլթանին Ղալային եւ զաւակաց նորին եւ ամենայն արեան մերձաւորացն, հաւասար կարդացողաց եւ լսողաց եւ որ ասեն Ած ողորմի։

2. Թղ. 502ա. (Այլ գրիչ նօտրագիր). Այս եղեւ ՌՄԼԵ (=1786) ամին ի Մարտի ԻԷ. Ես անպիտանս Աւանեօղլունէն խըր տէրացու Մըկըրտիչ ըսկըսեցի, ով որ այսով գիրքս կարդայ, կամ ի հանդիպէք, յիշեցէք մեզ հարմեզայի ըմբռնչեցեալըս մեր եւ դուք յիշեալ լինիցիք ի Ած մերմէ, ամէն։

3. (Անծանօթ Ցայսմաւուրաց վերջերն այլ գրիչ, բոլորագիր). Որ ողորմի ասացէք զրոցս Պաղպանէին եւ ծնողաց նորին Քոչակին եւ մայրն Զինէ եւ քաւորեացն Թուրվանէին, Ըլեղուխին, Սգանդարին, Սուլթանին, Ղալային եւ կարդացողաց եւ այլն։

*Սոյն վերջին յիշատակարանը գրեթէ մի եւ նոյն կերպիւ այսպէս կրկնուած են ամէն Ցայսմաւուրաց վերջերն։*

## 7.

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

**ՌՃԷ = 1658**

ԿԱԶՄ սեւ կեղեւեան, չախմախեայ կարմիր կաշէպատ, երկու արտաքին երեսներն պղնձեայ զարդերէն պղնձեայ զամերով զամուած են։ ՆԻՒԹ ճաշ թուղթ, ողորկեալ։ ԹԵՐԹՔ 512 կամ 1024 էջք։ ՄԵԾՈՒԹԻՒՆ 39,5×26 հարիւրորդամէտր։ ԳԻՐ բոլորագիր, տեղ տեղ գրիչն կը փոխուի։ ԳՐՈՒԹԻՒՆ երկսիւնեան. 30,5×18 հրդմ. Սիւնակաց միջեւ եղած պարապ միջոցն է 1.5 հրդմ։ ՏՈՂՔ 41՝ մինչ Թղ. 131բ. եւ 39՝ մինչեւ վերջ։ ՀԱՆԳԱՄԱՆՔ շատ մաքուր պահուած է։ ՊԱՏԿԵՐՔ Թուով 2. ա) Թղ. 7բ. Ս. Գրիգոր Լուսաւորիչ՝ կը մկրտէ զՍ. Տրդատ եւ զպալատականն. բ) Թղ. 319բ. Ս. Յարութիւնն Քրիստոսի։ ԽՈՐԱՆՔ Թուով 3. ճանկերձ մեծ եզերազարդերով. Թղ. 8ա, 199ա, 320ա։ ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ են նկարք եւ զանազան սրբոց պատկերք, ամէնօրեայ Յայսմաւուրաց լուսանցքը։ ԶԱՐԴԱԳԻՐՔ եւ ԹՌՉՆԱԳԻՐՔ են ամէն գլխոց սկզբնագրերն։ ԳԼԽԱԳԻՐ Թղք. 7ա, 319ա, 512բ, եւ 3 թուղթք սկիզբէն 2՝ վերջէն։ Սկիզբի պարապ թղթերուն կը յաջորդէ այլ գրչով, Ցուցակ մը այբուբենական կարգաւ անուանց Սրբոց, Տեղեաց, եւ այլն, որոյ մէջ նշանակուած է նաեւ սրբոյն տօնին օրը։ Ցուցակիս վերջն գրուած է. «Ցանկս գրեցաւ ձեռամբ տէր Յովհաննէս գրչի, ի յաւ եւ յընտիր օրինակէ, զի զսա խնդրեցէք փութով զոյգն»։ ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ անթիւ բազմութեամբ, այն է՝ ամէնօրեայ Յայսմաւուրներէ յետոյ, բայց կրկնութիւն են։ Մասնաւորապէս Թղ. 6ա, եւ 510ա։ ԺԱՄԱՆԱԿ գրութեան ՌՃԷ (=1658)։ ԳՐԻՉ Թորոս անուն։ ԾԱՂԿՈՂ Յովհաննէս անուն։ ՏԵՂԻ գրութեան Կեսարիա՝ ընդ հովանեաւ Ս. Աստուածածնի։ ՏԷՐ Խոճայ Սքանդար։

**Մասնաւոր է ՅԱՅՍՄԱՒՈՒՐՍ՝ որոյ մէջ կան սրբոց վկայաբանութիւնք։ Գլխաւորք հետեւեալ կարգաւ են.**

Ա. 1. Տօն Յովհաննու Կարապետին եւ Աթանագինեայ Հայրապետին։ 2. Տօն Շողակաթին իջման Միածնին Բանին Ածյ ի Վաղարշապատ քաղաքի։ 3. Տօն է փոխման Ամենօրհնեալ Ս. Աստուածածնին։ 4. Յիշատակ Պատկերին Քրիստոսի որ ի Դաստառակին։ 5. Տեառն Ս. Առաքելոյն Թումայի։ 6. Գիւտ գօտւոյ Ս. Աստուածածնին։ 7. Նիկիոյ Ս. Ժողովոյն։ 8. Տօն Ծննդեան Ս. Աստուածածնայ։ 9. Նաւակատիք Ս. Խաչի։ 10. Խաչվերաց։ 11. Յիշատակ վարուց Ս. Հայրին Իսահակայ եւ Ս. Վրդպին Մեսրոպայ։ 12. Գիւտ նշխարաց Ս. Գրիգորի Լուսաւորչի։ 13. Վարք Ս. հօրն մերոյ Մաշդոց

Վարդապետի ։ 14. Եփեսոսի Ս. Ժողովյն ։ 15. Յովհան Ոսկեբերանին ։ 16. Որդոց եւ Թոռանց Ս. Գրիգորի Լուսաւորչին ։ 17. Ս. Յակոբայ Մծբնայ Հայրապետին ։ 18. Յիշատակ Առաքելոցն Պետրոսի եւ Պօղոսի ։ 19. Տօն Ծննդեան եւ Յայտնութեան Տն մերոյ ։ 20. Տօն Վարագայ Ս. Խաչին ։ Եւ այլն ։

*Մեր յիշած սոյն կտորներն գլխաւոր վկայութեանց մի մասն են, բաց ի սոցանէ Մատենիս մէջ կան, մեր Հայկական Տօնացոյցի համեմատ՝ ամէն Սրբոց վկայութիւնքն եւ յիշատակարանութիւնք, ինչպէս կը գտնուին ամէն Յայսմաւուրաց մէջ ։ Սակայն յայտնի է, որ ձեռագիր Յայսմաւուրք իրարու չեն նըմանիր այս եւ այն կտորի նկատմամբ, որ միոյն մէջ ընդարձակին՝ միւսին մէջ համառօտ կ'ըլլայ ։ Ոմանք Յայսմաւուրք եւս շատ աւելի յաւելուածներ կ'ունենան ճոխացուցած, ինչպէս նոյն կարգէն է մեր սոյն Յայսմաւուրք մատեանն, զորս չուզեցինք նշանակել չը խըճողելու համար ։ Համեմատէ Սա՛. Գըրչէհրի Ս. Գէորգ Եկեղեցւոյ սեփական թիւ 2 Յայսմաւուրքին հետ ։ Երես 65 ։*

Բ. Հետեւեալք եւս կան.

1. Թղ. 10ա. Պատմութիւն Շիրարայ ։

2. Թղ. 16բ. Յիշատակ անկար պատմուճանին Քսի ։

3. Թղ. 58ա. Յիշատակ է կատարելոց Յունաց ։ ի Թվին Հայոց ՄԿ (=811) ։

4. Թղ. 108ա. Պատճառ յաղագս երկնային դասուցն, թէ որպիսիք են փառաւորութիւնք նոցա, և թէ ո՞յք են առաջինք, միջինք և վերջինք ։ Սկիզբն. Իսկական էութիւն և գերաբուն Աստուածութիւնն ։

5. Թղ. 109ա. Տեառն Ներսէսի ասացեալ մաղթանք առ Հրեշտակապետսն ։ ըՍկիզբն. Արդ պաղատիմք առ հոգեղէնդ ։

6. Թղ. 132ա. Գիւտ գրոյն Հայոց ի Բալու ։ Սկիզբն. Ս. Վարդապետն և սքանչելի այրն Այ ձգնաւորն Մեսրոպ ։

7. Թղ. 133ա. Ողբանք... ասացեալ Մեծին Մովսէսի քերթողի ։

8. Թղ. 187ա. Խրատ Թամթուլի առ աշակերտն իւր զԹումաս... ։ Սկիզբն. Որդեակ իմ Թումաս, այսօր կոչեաց զքեզ ։

9. Թղ. 196բ. Պատճառ Ճրագալուցի Ծննդեան եւ Յայտնութեան Քի Այ ։ Սկիզբն. Խորհուրդ աւուր ճրագալուցիս յոյժ գեղեցիկ է ։

*Տես նաեւ բոլոր ութօրէքն ։*

10. Թղ. 319բ. Սրբոյն Եղիշէի Հայոց Վարդապետի ասացեալ ի հրաշափառ Յարութեանն Փրկչին Յի ։ Սկիզբն. Կանխագոյն Մարիամ Մագթաղենացին ։

11. Թղ. 354բ. Տեսիլ Սբ Վարդապետին Յովհաննու Գառնեցոյն ։

12. Թղ. 419ա. Յիշատակ կատարելոցն Հայոց ։ Թվին ՆԿԷ (=1018) ։

13. Թղ. 493ա. Պատմութիւն Յովասափու ի Բարդամս ճգնաւորին ։

*Սոյն պատմութեան վերջը գրուած է ։*

*Ես Սաաս մեղաւոր ծառայս Այ բազում աշխատութեամբ եւ ջանիւ փոքր ի շատէ ծայրաքաղ արարեալ թարգմանեցի զայս ի Հայ բարբառ, ձեռամբ իշխանի միոյ պատուաւորի ։*

14. Թղ. 505ա. Պատմութիւն նախահարցն սրբոց Ադամայ և որդոցն և Թոռանց նորին ։

*Սոյն պատմութեան վերջն ալ գրուած է*

*Զպատմութիւն Նախահարցն կարգայ յաւուր Կիւրակէի եւ զանպիտան գծողս յիշեալ, եւ յայլ օրինակաց ի յետեւ Հրեշտակապետացն է գրած զպատմութիւն ։*

## ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ

1. Թղ. 6բ. *Զծաղկող եւ զկազմող սորայ տառիս զհող եւ զփոշի Յովանէս նուաստ եւ վատթար գրիչս յիշեցէք ի Քս որ աշխատեցայ ի սուրբ տառս, զի Գ. խորանքն ընդդիմակայ պատկերքնովն (այսպես). եւ զայ(լ) անօրինական անգիւքն ցրուապատկերքներն բաց կարեաց մերոց զարդարեցաք զտառս. աղաչեմ եւ որ գարշապարաց ձերոց մաղթեմ մնխրամածեալ երեսօք յիշեցէք ի քաղցր եւ աղօրմած Քս Ածն որ ծովակրեալ եւ անհունն մեղաց մերոց թողութիւն շնորհեսցէ, որ ի ձեզ եւ ի մեզ գթածն Ած քաղցրացի ի միւսանգամ գալըստեանն իւրում, ամէն ։ Հայր մեր որ յերկինս ։ Թվին ՌՃԷ* (=1658) ։

2. Թղ. 510ա. (Գլխաւոր Յիշատակարան). Փառք... Արդ պատուական եւ Աժանէր եւ բարեմիտ Խուճայ Սզանդարն, եւ տոհմաւ ըզմարգարտաշատ տառս զայս եւ զանառիկ մեծութիւնս, զպայծառութիւնս մանկանց Սբ Եկեղեցւոյ։ Եւ ես Թորոս գրիչս, տեսի զհամափափաք սէր սորա, զոր ունէր հետ սբ գրոցս. եւ ի ձեռն արկեալ գրեցի ըստ խնամ ակարութեանս եւ ըստ Այ յաջողութեանն յաւարտ ածի զՍբ Գիրքս որ կոչի ՅԱՅՍՄԱՒՈՒՐ. որ ունի հաւաքեալ ի յինքեան, զճառս տէրունական տօնից եւ պատմութիւնս..., Եւ եղեւ գրատարութիւն գրոցս ի ՌՃԷ (=1658) թուականին Հայոց, ի յաւ եւ յընտիր օրինակէ, որ ասի ՏԵՐԻՑՆ, եւ այլ աւելի քան զնոցայն, զի չատ նոր վկայք ասա գրեցան եւ հարստացաւ գիրքս այս քան զայն, ընդ հովանեաւ Սբ Եկեղեցւոյս, որ անուամբ կոչի Սբ Ածածին. ի Հայրապետութեան Տեառն Խաչատուր Կաթողիկոսի, եւ յԱռաջնորդութիւն սուրբ... Արհեպիսկոպոսին Մերոյ Գրիգոր Վարդապետին։ Արդ որ հանդիպիք սբ գրոցս կարդալով կամ օրինակելով յիշեցէք ի սբ աղօթս ձեր, զվերոյիշեալ ստացող սբ գրոցս ըզՍզանդարն եւ զծնողսն իւր Էմպիկն եւ զԴանանայն, եւ զամուսինն իւր զՊանարն եւ զեղբայրն իւր զԳրիգորն եւ զորդին Սիմաւոնն, եւ քեռն իւրոյ Շահգաթին եւ կրկին քեռն իւրոյ Շահնազրանին եւ փեսայն իւրոյ Սարգսին եւ մեծ պապուն Աժատուրին եւ պապօրն Հերիխային եւ քեռ պապուն Սնանին եւ քեռ մօրն իւրոյ Աւչրին, եւ մօրն քեռն իւրոյ Ղասիմին եւ որդւոյն Էսիային եւ հօր եղբայրն Փօլասին, եւ Խուճայ Սզանդարին զաւերացն Մարիամին եւ Ղեմարին եւ որդւոյն Սայաղային եւ զքանչին Ռսկենասին, եւ հօր եղբօր որդւոյն Աժատուրին եւ զամենայն ազգայինս իւր զկենդանիս եւ զհանգուցեալսն, եւ լի բերանով Ած ողորմի ասացէք բարեհոգի Սզանդարին եւ իւրոցն ամենին, որք յիշատակեցան աստ, եւ Ած ձեզ ողորմեսցի, ամէն..., Զունի որ իշխանութիւն թէ որդի թէ ազգական եւ ամենայն ոք որ հանել ջանայ զգիրքս ի դրանէ Սբ Եկեղեցւոյս Ածածնայ, նորքեւ կապանաց եւ անիծից է, եւ զմասն Յուդայի եւ զհայէնի առցէ, եւ յաւ պահողքն օրհնեին ի յԱյ եւ ի սրբոց նորա. ամէն։

3 (Անկեն օրհայ Յայսմաւուրքներկն յեսոյ). Որ ողորմի ստացողի գրոցս Սզանդարին եւ կենակցին Պանարին եւ ծնողացն Էմպիկին եւ Դանանային եւ եղբօրն Գրիգորին եւ որդոյն Սիմաւոնին եւ ընթերցողին։

Առանց տարբերութեան այսպէս կրկնութիւնք են, այս վերջին յիշատակարութիւնն, ամէն Յայսմաւուրքի վերջերն։

# Յ.

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

### ՌՃԼԲ = 1683

ԿԱԶՄ աւանդական, սախտակեայ կաշէպատ, երկու աւտաքին երեսներն հինգ սեղերէն զամուած են պղնձեայ հնգական զամերով։ ՆԻՒԹ Թուղթ մաքուր եւ ողորկեալ։ ԹԻՒՂԹՔ 524 կամ 1048 էջք։ ՄԵԾՈՒԹԻՒՆ 38,5×25,5 հարիւրորդամէթր։ ԳԻՐ բոլորագիր, մաքուր եւ սեւ մելան։ ԳՐՈՒԹԻՒՆ երկսիւնակ 30×17 հրդմ. Սիւնակաց միջեւը եղած զատարկ միջոցն է 1,5 հրդմ։ ՏՈՂՔ 38։ ՀԱՆԳԱՄԱՆՔ բաւականաչափ մաքուր պահուած է։ ԼՈՒՍԱՆՑԱՁԱՐԴՔ նկարք են ամէնօրեայ Յայսմաւուրաց սկիզբի լուսանցքը։ ԹՌՉՆԱԳԻՐՔ են ամէն գլխոց սկզբնագրերն. եւ ուզզակի նոյն կարմրաւ։ ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ բազմաթիւ են ամէնօրեայ Յայսմաւուրաց վերջերն, եւ մանաւանդ Թղ. 524բ։ ԺԱՄԱՆԱԿ գրութեան ՌՃԼԲ (=1683)։ ԳՐԻՉ Յովսէփ Երէց։ ՏԵՂԻ գրութեան Կեսարիա ի գիւղաքաղաքն Յուրտաւյ ի դուռն Ս. Ստեփաննոսի եւ այլն։ ՏԷՐ Տէր Մինաս Քահանայ, յետոյ Ս. Ածածնայ եկեղեցին Կեսարիոյ։

#### Մասնանք է՝ ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Որ կը պարունակէ մեր հայկական Տօնացոյցի համեմատ ամէն սրբոց վկայաբանութիւնքը. բաց ի գրութեանց համառօտութենէ և կամ ընդարձակութիւնները, կարգերն համեմատ Թիւ 7 Յայսմաւուրքին հետ։

## ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ

1. Թղ. 524բ. (Գլխաւոր յիշատակարան). Փառք . . . Արդ՝ գրեցաւ սա ձեռամբ մեղաւորի եւ անարժան եւ անպիտան եւ փցուն գրչի Յովսէփ Երէց անուանի, ի Թուականութեանս Հայոց ՌՃԼԲ (=1683) ամին, ի մայրաքաղաքն Կեսարիոյ, ի գիւղաքաղաքս որ կոչի Թալասայ ի դուռն Սրբոյն Ստեփաննոսի Նախավկային եւ Սրբոյն Սարգսի եւ Սրբոյն Գէորգայ զօրավարացն, եւ այլ համօրէն սոսա հաւաքեալ սրբոցն։ Արդ գրեցաւ լուսազարդ մատեանս Աստուծոյ որ կոչի ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ, ի լաւ եւ յընտիր օրինակէ, զոր առեալ զնոյն օրինակեցի զսա, ի Հայրապետութեան Տեառն Եղիազար Կաթողիկոսին ամենայն հայոց, եւ ի յԱռաջնորդութեան սորա հաւանեալ Գրիգոր քաջ Րաբունապետին եւ Արհիեպիսկոպոսին եւ Աստուածային Վարդապետի։ Արդ՝ աղաչեմ զամենայն դասս քահանայից որք հանդիպիք յայս լուսազարդ մատեանս, յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զմեղապարտ զՅովսէփ Երէցս եւ զծնողսն զՏէր Միհրան եւ զամենայն արեան մերձաւորսն։ Դարձեալ յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զՏէր Ներսէս Վարդապետն որ բազում աշխատութեամբ ուսոյց արուեստ նօտարութեան ինձ անարժանիս Յովսէփիս։ Դարձեալ աղաչեմ յիշել ի յաղօթս ձեր զանարժան եւ զանպիտան գրիչս եւ զծնողն իմ Գրիգորն եւ զմայրն իմ Հեղինէ . . . . Ո՛վ կարդացող կամ օրինակօղ մեղաց թողութիւն խնդրեցէք ի Քէ Այ. մերոյ զի եւ դուք գտջիք ողորմութիւն յամենատես պարգեւողէն Քէ Այ եւ որ յիշէ յիշեալ լիցի անեղ աստուածն Քէ. ամէն։ Հայր մեր որ յերկինս . . . . (Այլ գրիչ, նուրբ բոլորգիր) Յիշատակէ Յայսմաւուրքս ի դուռն Ս. Աստուածածնայ Կեսարիոյ որ է Մաժակ, եւ չունի ոք իշխանութիւն հանել զսա ի դրանէ Ս. Տաճարիս, եւ թէ ոք յանդգնի մասն եւ բաժին զԹորգոյի եւ զխաչահանուացն առցէ, եւ խոռնամոլ պահողքն աւրինին յԱյ եւ յամենայն սրբոց նորա։

2. (Անկեղծ Յայսմաւուրաց վերջն). Մտացողի գրոցս Տէր Միհրանին եւ ծնողացն Կարապետին եւ Ծաղկածուին, եւ կողակցին Մարգրիտին, եւ եղբարցն Յակոբին, եւ Աբրահամին, եւ քուերն Աննային, եւ մտաւոր գրչիս, եւ կարդացողաց եւ լսողաց։

Կեսարիոյ Էֆքէրէ եւ կամ Թալասայ գիւղաքաղաքն, որ տասն վայրկեանի չափ հեռաւորութիւն ունի Ս. Կարապետի հռչակաւոր վանքէն, շինուած է ձորի մը մէջ տարածուելով լերան երկու կողերուն վրայ եւս։ Կը բաղկանայ 850 տուներէ, որոց 200 տունն Թուրք եւ մնացեալք Հայ են։ Ս. Եկեղեցին՝ որ շինուած է յանուն Ս. ըՍտեփաննոսի, հոյակապ, գեղեցկաշէն եւ պայծառ է զմբէթաւոր։ Ս. Գէորգ եւ Ս. Սարգիս Եկեղեցիք, որք կը յիշուին թէեւ յիշատակարանին մէջ, բայց այսօր տեղերն անգամ անծանօթ են այժմ։

## Գ.

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

### ԵՐԿՈՒ ՀԱՏՈՐԷ ԲԱՂԿԱՑԵԱԼ

### ԺԷ ԴԱՐ

ԿԱԶՄ ուռուցիկ սախտեակեայ կաշեպատ։ ԹՈՒՂԹ Թուղթ, պինդ եւ անողորկ։ ԳԻՐ բոլորագիր, միջին մարութեամբ եւ սեւ մելան։ ԳՐՈՒԹԻՒՆ երկսիւնակ։ ՀԱՆԳԱՄԱՆՔ քայքայուած. ԽՈՐԱՆՔ Թուով 3։ ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ են նկարք, ամէնօրեայ Յայսմաւուրաց եզերքն։ ԶԱՐԴԱԳԻՐՔ եւ ԹՌՉՆԱԳԻՐՔ են ամէն գլխոց սկզբնագրերն։ ՎԵՐՆԱԳԻՐՔ եւ ԳԼԽԱԳԻՐՔ կարմիր են։ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՔ. Սոյն երկու հատորէ բաղկացեալ Յայսմաւուրք ամսենից առաջին անգամ կազմն քայքայուած եւ երկրորդ անգամ կազմուելու ժամանակ անփութութեամբ (Թուի թէ օտար մը կազմած է) Թղթերն բոլորովին խառն ի խուռն դրուած են, որով օրերն եւ տեղերն գլխովին շփոթուած։ Սոյն վերջին կազմն ալ դրեթէ քայքայուած ըլլալուն, երկարօրէն նկարագրել հնարկ չը համարեցինք սոյն Մատեանն։

# 10.

# ՃԱՇՈՑ

**ՌՃԺԳ = 1664**

ԿԱԶՄ արեւելեան, տախտակեայ կաշէպատ. ՆԻՒԹ թուղթ ալիսակ. ԹՈՒՂԹՔ 410 կամ 820 էջք. ՄԵԾՈՒԹԻՒՆ 38×28 հարիւրորդամէթր. ԳԻՐ բոլորագիր. միջին մաքրութեամբ մինչեւ Խաչի կանոնն, յետ այնորիկ գրիչն կը փոխուի ոչ այնչափ մաքուր. ԳՐՈՒԹԻՒՆ երկսիւնակ 31×20 հրդմ. Սիւնակաց միջեւը եղած պարապ միջոցն է 1.4/5 հրդմ. ՏՈՂՔ 36. ՀԱՆԴԱՄԱՆՔ թղթերն մաքուր մնացած են, բայց կազմն քայքայուելու վրայ է. ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ ամէն գլխաւոր բաժանմանց սկիզբն լուսանցքը, գեղեցիկ եւ ճաշակաւոր շինուած են. ԶԱՐԴԱԳԻՐՔ եւ ԹՌՉՆԱԳԻՐՔ յաճախ են. ԿԱՐՄՐԱԳԻՐՔ եւ ԳԼԽԱԳԻՐՔ կարմրաւ են, տեղ տեղ ալ կապոյտ. ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ Թղ. 409. ԺԱՄԱՆԱԿ գրութեան ՌՃԺԳ (=1664). ԳՐԻՉՔ երկու Յովհաննէս երէցք. ՏԵՂԻ գրութեան, յերկիրն Գերմանիկոյ ի գիւղաքաղաքն Զէյթուն ընդ հովանեաւ Ս. Սարգսի զօրավարին. ՏԷՐ մատենիս, Կեսարացի Մահտեսի Յովհաննէս. յիշատակ Ս. Աստուածնայ եկեղեցւոյն Կեսարիոյ. ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ. Մատենիս վերջէն թուղթ մը պակաս է ինչպէս նաեւ սկիզբէն.

**Մատեանս է՝ ՃԱՇՈՑ.**

Որոյ մէջ կան տարւոյն ամէն օրուան Պատարագի ընթերցուածք և Աւետարանք կարգաւ, իւրաքանչիւր օրուան ընթերցուածոց սկիզբն տեղեկութիւնք կան վերնագիրներով որոնք կարմիր մելանաւ գրուած են։ Եւ ի մասնաւորի հետեւեալք

1. Կանոն ի մեծի աւուր Ճրագալուցի...
2. Կանոն Ս. Ծննդեան և Յայտնութեան Տն մերոյ։
3. Կանոն Տեառն ընդ առաջի։
4. Կանոն Ս. Զատկի։
5. Կանոն Պէնտէկոստէի (Հոգեգալուստ)։
6. Կանոն Պայծառակերպութեան։
7. Կանոն Խաչվերացի. եւայլն։

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

1. Թղ. 409. (Գլխաւոր յիշատակարան). Փառք... որ եւ անեղալ բղխմանցութիւն, եւ զանճառելի փառաւորութիւն Աստուծոյ զան-ձիս, եւ լուսաղբիւր անմահութիւն Սր Բուրաստանիս, յորդառատ բղխեալ բաղձացեալ ինքնայօժար կամօք նախախնամող եւ բղխալի սիրով եւ անընդմէջ սրտի, զանկապաղ եղեւրանեալ այսն Կեսարացի Մահտեսի Յովհաննէսին, եւ ես գրել զուարթ տաս, զի տագաւ զանձ անմահութեան, զլուսափայլ պսակս հիւսեալ ի Հոգւոյն Սրբոյ, եւ զարդս յանկենուէր ընդելուզեալ յականց փառաց, եւ ի լուսափայլ մարգարտաց. թագ եւ լանջաց, լուսոյ մօրս մեր կուսի Սր Եկեղեցւոյ, եւ ի ձեռն զանթառամ եւ զանուշահոտ ծաղիկս փնջեալ ի հաստատուն մանկանց լուսածնելոյն։ Եւ զանմահական աղբիւրս յորդում ծառաեալ ի Սիոնէ, եւ զյորդագնաց խնդութիւն եւ ուրախութիւն ի սոյն տէրունեան եւ Աստուծոյ որդւոյն, եւ եզ զսա Մահտեսի Յովհաննէս ի տաճարս Սր Աստուածնին, ի մայրաքաղաքս Կեսարիա որ է Մաժաք, յիշատակ իւր եւ իւրայնոցն, հօրն Յակոբին եւ մօրն ... (անունն արտւած էր), եւ որդւոյն Մահտեսի Սաղապապալին, եւ Պետրոսին, եւ եղբարցն Մովսէսին եւ Սիմէոնին, եւ քուերացն Պանիարին, եւ Նազլուին, եւ Մարուինին, եւ Եղիսաբէթին, եւ փեսայիցն Սմանդարին, եւ Աստուրին եւ Սիմէոնին եւ ամենայն ազգականաց իւրոց կենդանեաց եւ հանգուցելոց առ հասարակ ամենայնի։ Արդ գրեցաւ ձեռամբ յոգնամեղ անձին Յովհաննէս Երիցու, յերկիրս Գերմանիկոյ ի գիւղաքաղաքս Զէյթուն, ընդ հովանեաւ Սր Սարգսի զօրավարին, եւ Սր Փրկչայ Ուխտին, եւ մօրն լուսոյ Սր Աստուածնին, եւ Սր Հրեշտակապետաց, եւ Յովհաննու Կարապետին, եւ Սր Գրիգորի մերոյ լուսաւորչին, եւ Յակոբայ Մծբնայ հայրապետին, եւ Պարսամայ ճգնաւորին, եւ Թէոդորոսի զինւորին, զի Սր Տաճարքս որ աստ են յանուն սոցայ է կառուցեալ։ Եւ ի Հայրապետութեան Սր Էջմիածնի լուսաւորեալ Աթոռոյն Տն Յակոբայ երջանիկ Հայրապետի, եւ Տանս Կիլիկոյ Դաւթի կաթուղիկոսի, եւ ի Առաջնորդութեան մերոյ նահանգիս Տ. Գրիգոր Աստուածաբան Րաբունապետի եւ Արհի Եպիսկոպոսի հօր եղբօրն իմոյ, որ ի յանցեալ ամի փոխեցաւ առ ի կե-

նայս առ յոյժ ամն . . . (այսպէս) Ածն մեր, եւ աչօրդեաց . . . . (արդուած բառեր կան) աշակերտն իւր Մովսէս վարդապետն ։ Ի թուաբերութեան Հայոց ՌՃ եւ ի ԺԳ (=1664) ամին, որ է նահանջ, եւ տարւոյն գիրն եւ Տանուտէրն Խեցգետին ։ Եւ եղեւ յայսմ ամի բազմահաւաք ժողով Տաճկաց Ազգին պատերազմել ընդ Ֆրանկք որ ի վաղուց հետէ հակառակութիւն ունէին ընդ միմեանս, զոր Տէր Ած խաղաղութիւն տացէ ամենայն աշխարհի, եւ մանաւանդ Հայոց ազգի, ամէն ։ Արդ աղաչեմ զամենեսեան զլուսաւորեալ մանկունս Սբ Եկեղեցւոյ որք զմայլիք անուշահոտ բուրմամբ Ածախօսս մատենիս, բարւոյ յիշման արժանացուցանէք զվերոյ ասացեալ զայրն երանելի զմահտեսի Յովանէսն, զի ստացաւ զսա յիշատակ իւր, եւ կենդանեաց եւ ննջեցելոց իւրոց ։ Այլ եւ յիշեսջիք զՊետրի Վարդապետ Մանուէլն եւ զծնողսն իւր զՃանանայն, եւ զեղբայրն իւր զԳրիգորն եւ զորդին զՄինովն եւ Խաճապէկն, զի նա եղեւ միջնորդ այս որ ստացաւ որ գիմաց երկու եւ երեք անգամ ի Կեսարիա, եւ եկեալ առ մեր նուաստութիւնս յոժար սրտիւ, եւ ետ գրել զոր գիրքս, զոր հայցեսցուք ամենեքեանս միաբան ի Տեառնէն մերմէ Յսէ Քսէ զի ընկալցի ի հանգիստ իւր եւ հատուսցէ վարձս բարեաց ամենայնի ամէն ։ Նաեւ զամենամեղ նուաստ գրիչս Յովանէս Երէց, եւ զհայրն իմ զԱւետիս Երէց, եւ զպապն իմ զՎանան Երէց գրչապետն, եւ զեղբայր նորին զՆերսէս Եպսն, եւ զհօրեղբայրն իմ զԳրիգոր Բարունապետն, եւ զուսուցիչն իմ զՅոհանն Երէցն եւ զՄիքայէլ Յոհանէս Երէցն, որ յոժարակ եղեւ մեզ եւ գրեաց ի Խաչէն մինչ ի մնար գրոցս, եւ զայլ արեան մերձաւորսն իմ աղաչեմ յիշել ի Տէր, զկենդանիս եւ զհանգուցեալսն ։ Եւ որ ընդունողն է մաղթանաց եւ տաւաղ աղօթութեան Տր Յս Քս յիշեսցէ եւ յիշողացս առ հասարակ ողորմեսցի ։ Արդ՝ մի ոք իշխեսցէ հանել զսա ի Սբ Ածածին Եկեղեցւոյս, ոչ պահելով եւ ոչ ծախելով, եւ ոչ այլում տալով, եւ որ յանդգնի եւ հանէ խերն զատապարտեսցի յԱյ եւ ընդ Տիրամատն հրէիցն դատեսցի ։ Եւ ով որ խնամածէ եւ յամենայն վտանգէ խրանց պահէ զգուշութեամբ եւ անխափան կարգայ, որոցն փառացն մանակցեսցի, եւ ի Քսէ վարձատրեսցի ամէն ։ Հայր մեր որ յերկ . . . ։

## 11 եւ 12.

## ԳԱՆՁԱՐԱՆ

### ԵՐԿՈՒ ԿՏՈՐ ՄԱՏԵԱՆՔ

**ԺԷ. ԴԱՐ**

ԿԱԶՄ սեւակեան, տախտակեայ կաշէպատ ։ ՆԻՒԹ Թուղթ կակուղ եւ ողորկեալ ։ ՄԵԾՈՒԹԻՒՆ 17×13 հարիւրորդամէտր ։ ԳԻՐ բոլորագիր, միջին մարմնեամբ ։ ԳՐՈՒԹԻՒՆ միասիւնակ 12×10 հրդմ ։ ՏՈՂՔ 15 ։ ՀԱՆԳԱՄԱՆՔ այնչափ մաքուր պահուած չեն Մատենիս վերջերէն թղթեր խնկած են ։ ԶԱՐԴԱՐԱՆՔ կը գտնուին եւ սակայն ոչ այնչափ ճաշակաւոր ։

### ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՔ

Սոյն երկու Մատեանքն որք են Գանձարանք, կը պարունակեն իրենց մէջ զանազան Գանձեր յատուկ օրերու եւ սրբոց, որոց մեծագոյն մասին հատուածոց սկզբնատառերն կը կազմեն, Խաչատուր, Յովանէս, Մկրտիչ, Սարգիս, Գրիգոր, Այրիվանեցի, և այլն ։ Սոյն երկու Մատենից պարունակած կարգերն համեմատ, այն (թիւ 11) Գանձարանի հետ զոր յառաջ բերած եմք, Ցուցակ Հայերէն Ձեռագրաց ի Թուրքիա Ա. Տետր երես 28 ։ Սոյն երկու Գանձարանք մի եւ նոյն գիրքն ունին, կրնամք ըսել նաեւ թէ մի եւ նոյն գրչութիւն, եւ մի եւ նոյն կարգաւորեալ պարունակութիւն ։ Երկուքին վերջերէն եւս բաւական թղթեր խնկած ըլլալուն պատճառաւ, յիշատակարաններն կը պակսին, որով անծանօթ կը մնան ԳՐԻՉՆ, ՏԵՂՆ եւ ՏԵՐՆ, բայց գրչութիւնքն հնականօրէն ԺԷ դարուն եղած կ'երեւին ։

## 13.

## ԿԱՆՈՆԳԻՐՔ

**ՌՃԺԹ = 1670**

ԿԱԶՄ սրբուելեան ճին, շախտակեայ կաշէպատ. ՆԻՒԹ Թուղթ փոքր ինչ դեղնագոյն, կակուղ եւ փայլուն. ԴԻՐՔ միջակ եւ գրեթէ 300ի մօտ Թղթերով. ԳԻՐ բոլորագիր, միջին մարուԹեամբ եւ սեւ մելան. ԳՐՈՒԹԻՒՆ միասիւնակ. ՀԱՆԳԱՄԱՆՔ մաքուր պահուած է. ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ ի վերջն մատենիս. ԺԱՄԱՆԱԿ գրուԹեան ՌՃԺԹ (=1670). ԳՐԻՉ Գրիգոր անուն. ՏԵՂԻ գրուԹեան Կեսարիա՝ ընդ հովանեաւ Ս. Ածածնայ եկեղեցւոյն. ՏԷՐ նոյն Ս. եկեղեցին.

**Մատեանս է՝ ԿԱՆՈՆԳԻՐՔ.**

Ա. Որոյ մէջ կը պարունակին Առաքելական, տիեզերական և մեր ազգային մասնաւոր ժողովներու կանոնքն, զորս մի առ մի յառաջ բերել ուրիշ առԹի Թողուցինք։

Բ. Մատենիս վերջերն գրուած է ամուսնական ճուղաճամարի պատկերք՝ ընդարձակ բացատրուԹեամբ։

### ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ

(Գլխաւոր յիշատակարան ի վերջն մատենիս). Փառք . . . Արդ՝ կատարեցաւ եւ կազմեցաւ Սբ Առաքելագիր եւ Հայրապետագիր կանոնքս, ի Թվին ՌՃԺԹ. (=1670) Յունիս ամսոյ ի յԺ.թին, ի Մայրաքաղաքս Կեսարիոյ, ընդ հովանեաւ Սբ Ածածնայ եւ Սբ Սարգսայ, ձեռամբ յոգնամեղ եւ անարժան դպրի Գրիգորի. Արդ՝ աղաչեմ զձեզ ով պատուական հարք իմ եւ եղբարք, որք հանդիպիք սմա ուսանելով եւ կամ գաղափարելով յիշեսջիք ի մաքրափայլ յաղօԹս ձեր զվերոյգրեալս եւ զծնողքն իմ. Այլ եւ յիշեսջիք զստացողս սորին որ ի Սբ Տիրամօր քահէն զնեցին զայս կանոնգիրքս եւ եդին յիշատակ ի դուռն Սբ Ածածնին, զի որ յիշէ զմեզ յիշեալ լիցի առ յԱրարչէն մերմէ. որ է օրհնեալ յաւիտեանս, ամէն.

## 14.

## ՄԵԿՆ. ՄԱՏԹԷՈՍԻ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ

**ԺԷ ԴԱՐ?**

ԿԱԶՄ սրբուելեան, շախտակեայ կաշէպատ. ՆԻՒԹ Թուղթ կակուղ եւ ողորկեայ. ՄԵԾՈՒԹԻՒՆ փոքր քառածալ. ԳԻՐ նօտրագիր միջին մարուԹեամբ. ԳՐՈՒԹԻՒՆ միասիւնակ. սեւ մելան. ՀԱՆԳԱՄԱՆՔ բաւական մաքուր պահուած է. ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ ա) ի վերջն երրորդ մասին եւ բ) ի վերջն մատենիս. ԺԱՄԱՆԱԿ գրուԹեան Թուի ԺԷ դար. ԳՐԻՉ Սարգիս Ղրիմեցի որդի Հաբիմի. ՏԵՂԻ գրուԹեան եւ ՏԷՐ անծանօԹ.

**Մատեանս է՝**

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՄԱՏԹԷՈՍԻ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ, Հաւաքեալ քաղուածոյ, Գրիգորի աշակերտի Եսայեայ տիեզերալոյս Վարդապետի Յովհաննու Որոտնեցւոյ։

### ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ

1. (Մատեանս վեց մասերու բաժանուած է, ի վերջն երրորդ մասին գրեալ). Զբազմամեղ դպրիս, Սարգիս անուն որդի Հաբիմի յիշել մաղԹեմ, որբազացդ բանի, անմեղադիր լեր նուաստիս, զի խիստ շատագոյն էր աւրինակ գրոյս.

2. (Ի վերջն մատենիս գրեալ). Աւարտեցաւ գիրքս վեցերորդ համար քաղուածոյս, ի փառս Քրիստոսի աւրհնելոյն յաւիտեանս ամէն. Զգծող սորա զՍարգիս Ղրիմեցի, որ եմ եւ որդի Հաբիմի, յիշեսջիք միով Տէր ողորմեայիւ, եւ անմեղադիր լերուք զի յոյժ շտապեցայ.

# 15.

## ՔԱՐՈԶԱԳԻՐՔ

**ՌԻԳ = 1574էն առաջ**

*ԿԱԶՄ արեւելեան, տախտակեայ կաշէպատ։ ՆԻՒԹ Թուղթ, փոքր ինչ դեղնագոյն. կակուղ եւ ողորկ-եալ։ ԹՈՒՂԹՔ* 540 *կամ* 1080 *էջք։ ՄԵԾՈՒԹԻՒՆ* 23× 15,5 *հարիւրորդամէթր։ ԳԻՐ բոլորագիր միջին մաք-րութեամբ, տեղ տեղ գրիչն ալ կը փոխուի։ ԳՐՈՒ-ԹԻՒՆ միասիւնակ, շատ խիտ գրուած է, այնպէս որ տողերն իրարու հաւասար չեն եւ մինչեւ անգամ լու-սանցք կը պակսի։ ՀԱՆԴԱՄԱՆՔ բաւական մաքուր պահուած է։ ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ գլխաւոր յիշա-տակարանն Թէեւ կը պակսի, որովհետեւ վերջին Թուղթն մկրատելով հանած էին, բայց երկու այլ յի-շատակարանք կան (այլ գրիչ) մատենիս մէջ տեղն եւ վերջն։ ԺԱՄԱՆԱԿ գրութեան՝ ՌԻԳ* (= 1574) *Թուա-կանէն առաջ։ ԳՐԻՉ, ՏԵՂԻ գրութեան եւ ՏԷՐՆ ան-ծանօթ։*

**Մատենս է՝ ՔԱՐՈԶԱԳԻՐՔ։**

*Կամ Տաթեւացւոյ ձմերան հատորն։*

### ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ

1. (*Մատենիս մէջտեղերն օտար գրիչ*)· *Ով եղբարք սիրելեաք ի Տէր յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր, զանարժանս, եւ զանպիտանս ըզՅոհանէս ապաշաւոր բանիւ, զի որով չափով չափէք չափեսցի ձեզ յամե-նունակ մասանէն Այ։ Նաեւ զմայրն իմ զԱ-ւագ տիկինն, եւ զննջեցեալս մեր զփոխեալս առ Քս։*

2. (*Մատենիս վերջն դարձեալ այլ գրիչ*)· *Ո՛վ զաւակք լուսաւորից գրոց աշակերտեալ ան-ձինք յոր ընթեռնուք զայս հոգելից քարոզ-ատեանս, յի բերանով Ած ողորմի ասացէք Սար-կաւագ Զաքարին, որ բազմացաւ զաս ի հոգւոյ արդեանցն իւր՝ յիշատակ իւր եւ ծնաւղացն իւր եւ ամենայն ազգականացն իւր եւ ես զսա վերստին նորոգել եւ կազմել եւ բազում աշխատեցաւ զի մեղօք ողորմեալ սրտա եւ կազ-մող ի գրոց խաւնի* (այսպէս)*, յորժամ ուլայեցի ապրինակ չի կայր որ գրի զողանն* (այսպէս)*, եւ Սարկաւագ Զաքարան եւ իւր հանգիրակ եղբարքն պատուական Սիմէոնն եւ Զաքարան եւ Մեծերն եւ Դանէլն շատ չարչարեցան եւ միա գնելով եառոն գրել զողանեն* (այսպէս) *զոր եւ Տր Ած փարձահատուց լինի նոցա, եւ թէ սխալ գտանէք ի նոր գրերն անմեղա-դիր լերուք ու ձեր իմաստութեամբն ուղղե-ցէք։ Կազմեցաւ սա յԱռաջնորդութեան բա-նիրուն եւ ափեղերացեր քաջ եւ արի Յոհա-նէս Վարդապետին որ նա միայն էր մնացել լուսատու Հայոց Ազգի. ի թվին ՌԻԳ* (= 1574)*. ձեռամբ մեղաւոր Կօզլու, եւ Քսի փառք յաւիտեանս ամէն։*

# 16. 17. 18.

## ՔԱՐՈԶԱԳԻՐՔ

### ԵՐԵՔ ՀԱՏ

### ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԳՈՐԾԵՐ

*Այս երեք Քարոզագիրքերն ներկայ մեր ժամանակներու գրչութիւնք են նոր նոտրա-գրով, մեծ քառածալ սպիտակ եւ նոր թղթե-րու վրայ։ Առաջինը* (*Թիւ* 16) *կիսով չափ գրուած եւ մնացեալ թղթերն դատարկ մնա-ցած են. իսկ վերջին երկու Քարոզագրեանք* (*Թիւ* 17. 18) *նախ գրուած են եւ ապա այլ գրիչ մը առաջին գրուածներուն վրայ սրբա-գրութիւններ ըրած է բոլորովին, եւ անըն-թեռնլի վիճակին հասուցած է գրեթէ։*

## 19.

## ՔԱՐՈԶԱԳԻՐՔ

**ՌՄԺԳ = 1764**

*Ցօրինակ աշխարհաբառ եւ ռամկօրէն ի Տէր Յակոբ Քահանայէ Աւագեան Եւդոկիոյ. ՌՄԺԳ (=1764).*

*Մեծ քառածալ 92 կամ 184 էջ սպիտակ թղթի վրայ նօտրագրով գրուած անմշակ գործ.*

## 20.

## ՍԱՂՄՈՍ

### ԹՈՒԱԿԱՆ ՉՈՒՆԻ

*ԿԱԶՄ հին արեւելեան, բայց բոլորովին քայքայուած, սկիզբէն, մէջ տեղերէն եւ վերջէն բաւական թերթեր ինկած են. ՆԻՒԹ Թուղթ սպիտակ. ԳԻՐ բոլորագիր միջին մանրութեամբ. ԳՐՈՒԹԻՒՆ երկսիւնակ. ՄԵԾՈՒԹԻՒՆ քառածալ. ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ կան բայց ոչ արժէաւոր. ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ չունի. ԺԱՄԱՆԱԿ եւ ՏԵՂԻ գրութեան, ԳՐԻՉ եւ ՏԷՐ անծանօթ կը մնան. ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ Մատեանս որ է Սաղմոս անգործածելի վիճակին հասած է.*

## 21.

## ՄԱՇՏՈՑ

### ԺԶ ԴԱՐ

*ԿԱԶՄ հին արեւելեան, տախտակեայ կաշէպատ, ՆԻՒԹ Թուղթ բամբակեայ գորշագոյն. ԳԻՐ բոլորագիր, միջին մանրութեամբ. ԳՐՈՒԹԻՒՆ միասիւնակ. ՀԱՆԳԱՄԱՆՔ բաւական մաքուր պահուած է. ՄԵԾՈՒԹԻՒՆ ութածալ. ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ չունի. ԺԱՄԱՆԱԿ գրութեան Թուի ԺԶ. դար. ԳՐԻՉ, ՏԵՂԻ գրութեան եւ ՏԷՐ անծանօթ կը մնան.*

**Մատեանս է՝ ՄԱՇՏՈՑ ՄԱՅՐ**

*Արարեալ ի Տէր Առաքելոյ Սիւնեաց Եպիսկոպոսէ և ի Գրիգոր քաջ Հռետորէ.*



## 22.

## ՄԱՇՏՈՑ

**ՌԿԹ = 1620էն առաջ**

ԿԱԶՄ հին արեւելեան, տախտակեայ կաշէպատ. ՆԻՒԹ Թուղթ կակուղ եւ ողորկեալ. ՄԵԾՈՒԹԻՒՆ ու-Թածալ. ԳԻՐ բոլորագիր, միջին մարմնաւորութեամբ. ԳՐ-ՉՈՒԹԻՒՆ միասիւնակ. ՀԱՆԳԱՄԱՆՔ կազմն գրեթէ քայքայուած լինելուն. Թղթերն մեծաւ մասամբ մա-շած են. ՑԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ գլխաւոր յիշատակա-րան չունի, մանաւանդ մասնիս վերջն յիշա-տակարան մը կայ՝ այլ գրիչ. ԺԱՄԱՆԱԿ եւ ՏԵՂԻ գրու-թեան. եւ բուն իսկ ԳՐԻՉ եւ ՏԷՐ անծանօթ կը մնան.

**Մասնանս է՝ ՄԱՇՏՈՑ.**

*Համեմատէ սորա կարգերն եւ կանոններն Թիւ 10 Մաշտոցին հետ որ յառաջ բե-րած եմք, մեր հրատարակած Ա. Տետ-րին մէջ Ցուցակ Հայ. Ձեռագրաց ի Թուրքիա, երես 27. Սորա մէջ եղած տարբերն միայն տարբեր են.*

### ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

(Ա յ գրիչ). *Զվերջին զկապողս սորա զՏէր Գրիգոր Քահանայ յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր, եւ զգանձս եւ զգաղս մեռելին եւ զԱծանեգս եւ զԱրարիչն ի մեռելին գրեցի ես Պարսամ դպիրս յիշատակ մեր ննջեցելոյս, ամէն. ի թվականն ՌԿԹ* (=1620).

## 23.(1)

## ԺՈՂՈՎԱԾՈՅ

**ՌՄԶԹ = 1760**

*Կեսարիոյ Ս. Աստուածածնայ Եկեղեցւոյ Քահանայեարէն Տ. Յովհաննէս Քէշիշեանի սեպհական.*

ԿԱԶՄ արեւելեան, Թղթեայ կաշէպատ. ՆԻՒԹ Թուղթ, պինդ եւ անողորկ. ԹՈՒՂԹՔ 147 կամ 294 էջք. ՄԵԾՈՒԹԻՒՆ 15×10 հարիւրորդամէթր. ԳԻՐ նօտրագիր, միջին մարմնաւորութեամբ. ԳՐՈՒԹԻՒՆ միա-սիւնակ 11×7 հրամ. ՏՈՂՔ 20. ՀԱՆԳԱՄԱՆՔ մաքուր պահուած է. ՎԵՐՆԱԳԻՐՔ եւ ԶԱՐԴԱԳԻՐՔ կարմրաւ են. ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ Թղթ. 110ա. 147ա. ԺԱՄԱՆԱԿ գրութեան՝ ՌՄԶԹ (=1760). ԳՐԻՉ Տէր Յովհաննէս Քէ-Յեւրաւացի. ՏԵՂԻ գրութեան՝ Թուխ Յեւրաւայ. ՏԷՐ գրչին՝ ի վայելումն իւր եւ որդւոցն. ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ Մասնիս մէջ՝ այն է Թղթ. 1բ. 34բ. 39ա. 136բ. 137բ. հինգ տեղեր կնիք մը կոխուած է, որ կը կարդացուի «Քահ Տէր Յովանես ՌՃՂԹ».

**Մասնանս է ԺՈՂՈՎԱԾՈՅ որ կը պարու-նակէ.**

1. *Թղ.* 1ա. *Եկեղեցական կանոնք քա-ղուածօրէն.*

2. *Թղ.* 81ա. *Դաշանց Թուղթ. Սկիզբն. Կամօք և կարողութեամբ համագոյ Ս. Եր-րորդութեան.*

3. *Թղ.* 98ա. *Տեսիլ Պօղոսի Առաքե-լոյն խօսիլն ընդ հրեշտակին. Սկիզբն. Եւ եղեւ բան Տեառն.*

4. *Թղ.* 106բ. *Վասն զալստեանն Այ նա-խավախճան աշխարհին և կատարածի նո-րին ասացեալ է. Սկիզբն. Յայնժամ գայ Յիսուս ընդ արեւելս.*

5. *Թղ.* 110ա. *Զանազան առակք Թուով* 5. *Սկիզբն Ա. Առակի. Առիւծն ծերա-ցեալ.*

6. *Թղ.* 114բ. *Օրինակ երկու Պէրաթնե-րու, (Հայ տառիւք և Տաճկերէն լեզուաւ).*

7. Թղ. 123բ. Վասն առմանն Ըստամպուլու ի Թուրքաց։ Սկիզբն. Յինն հարիւր երկու Թուին ։ (Ոտանաւոր են բանքս)։

8. Թղ. 132բ—146բ. Պատմութիւն Վանատիկոյ քաղաքին. Սկիզբն. Յարեւմտից կողմ աշխարհին ։ (Ոտանաւոր են բանքս)։

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ

1. Թղ. 110ա. Յիշիցէք զգծագրողս Յովհաննէս անարժան Երէցս Եւդոկացի։

2. Թղ. 147ա. (Գլխաւոր յիշատակարան). Ի փառս ամենամեծին Այ եւ ողորմութեամբ նորին աւարտեցաւ Սբ Գիրքս, որ կոչի բառ հաւատոյ կանոնք ամենայն եւ կարգեալ Սրբազան Առաքելոց, եւ Սրբոց Հարց եւ Հայրապետաց, որ եւ ունի առկաւ ինչ Պատմութիւն հոգեւոր եւ վասն առմանն Ըստամպլու, եւս պատմութիւն Վանատիկոյ քաղաքին։ Ի թվականիս Հայոց ՌՄԶԹ (=1760) ամին, ձեռամբ յոգնամեղ եւ յանիմաստ Տէր Յովհաննէս անարժան Քահանայիս, ի վայելումն մեզապարտ անձինս եւ իմ որդեկացս։ Արդ՝ աղաչեմ եւ խնդրեմ զսրբազան դասս Քահանայից հարցդ եւ եղբարցդ յիշել զմաքրափայլ յաղօթս ձեր զխոտելս գծենին եւ զփոշի ոտից ամենայնից հանգիպողացդ անիմաստ գրիչս, նաեւ զծնողսն եւ զմարմնաւոր ծնողն իմ եւ զվարժապետս իմ Աստուածատուր Քահանայն եւ զհանգուցեալ մայրն իմ Մարիամ Խրիցկինն որ Դ ամ առաջ հանգուցեալ էր։ Եւ կողակիցն իմ յԵւայ Խրիցկինն, եւ զեղբարս զաւակացս Տիրացու Առեքինն եւ Գրիգորն...։ Դարձեալ աղաչեմ զմեծ պապըն իմ Տէր Պարսամ Քահանայն, եւ նորա Յարութիւն զխնակին քահանայն մեզաց թողութիւն խնդրեցէք։

## **24.**(1)

## ԱՒԵՏԱՐԱՆ ԵՒ ԳՈՐԾՈՑ

**ՌՁԱ = 1632 : ՉԻԳ = 1274**

### Կեսարիոյ Ս. Աստուածածնայ եկեղեցւոյ Քահանայներէն Հանգուցեալ Տ. Կարապետ Գալբագեանի սեփականն(1):

ԿԱԶՄ հին արեւելեան, սախտեան կաշէպատ։ Համանմանաբար Գործ Առաքելոցն միացուցած է վերջին կողմի ժամանակ։ ՆԻՒԹ Աւետարանը բամբակեայ Թուղթ. Գործոցը՝ ընտիր մագաղաթ։ ԹՈՒՂԹՔ 358 կամ 716 էջք. Թղ. 1–167 Աւետարան, Թղ. 167–358 Գործոց։ ՄԵԾՈՒԹԻՒՆ 17,5×13 հարիւրորդամէտր։ ԳԻՐ ընտիր բոլորագիր։ ԳՐՈՒԹԻՒՆ երկսիւնակ 14,5×11,5 հրմ.։ ՏՈՂՔ Աւետարանին 25. Գործոցին 26։ ՀԱՆԳԱՄԱՆՔ Աւետարանը մաշուելու վրայ է. Գործոցը շատ մաքուր։ ԽՈՐԱՆՔ եւ ԿԻՍԱԽՈՐԱՆՔ կան՝ Աւետարանին մէջ մեծ Թռչուն նկարով, մեծ երփներանգ։ ԼՈՒՍԱՆՑԱՁԱՐԴՔ ամէն գլխոց լուսանցքը։ ՁԱՐԴԱԳԻՐՔ եւ ԹՌՉՆԱԳԻՐՔ են Աւետարանի ամէն գլխոց սկզբնագրերն։ ԳԼԽԱԳԻՐՔ եւ ՎԵՐՆԱԳԻՐՔ կարմիր են։ ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. Աւետարանին՝ Թղ. 167ա. Գործոցին՝ Թղ. 358ա։ ԺԱՄԱՆԱԿ գրութեան, Աւետարանին ՌՁԱ (=1632). Գործոցին՝ ՉԻԳ (=1274)։ ԳՐԻՉ առաջնոյն՝ անծանօթ. երկրորդին՝ Թորոս Սարկաւագ։ ՏԵՂԻ գրութեան՝ ա) ի Հալպայ. բ) ի Սուրբ Ոսկան Մենդար։ ՏԷՐ ա) Սանոս Զալալի. բ) Ներսէս սպասաւոր բանին։

Մասանցն է՝

Ա. ԱՒԵՏԱՐԱՆ.

1. Թղ. 1—47. Յանկ Մատթէոսի և Աւետարան Մատթէոսի։

2. Թղ. 48—78. Յանկ Մարկոսի և Աւետարան Մարկոսի։

3. Թղ. 79—128. Յանկ Ղուկասու և Աւետարան Ղուկասու։

4. Թղ. 129—166. Յանկ Յովհաննու և Աւետարան Յովհաննու։

Բ. ԳՈՐԾՔ ԱՌԱՔԵԼՈՑ.

Թղ. 168—357բ. 1. Թուղթ Պօղոսի։ 2. Գործք Առաքելոց։ 3. Ընդհանրական Թղթեր։ 4. Յայտնութիւն Յովհաննու։

(1) Այժմ սոյն եւ յաջորդ թիւ 25(2) մասնաւոր կը պատկանին Մեծ. Տոփրոն Աստիկեան էֆ. Տ. Կ. Գալբագեանի մօտ, որ զաւակն է հանգուցեալ Քահանային։

կը տեսնուի թէ Գործք Առաքելոցը՝ Պօղոսի թղթերէն վերջը, եւ Ընդհանրական թղթերէն առաջ գրչագրուած է։

## ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ

1. Թղ. 167ա. (Աւետարանի գլխաւոր յիշատակարանը). Փառք արարչին ամենայնի, տացէ զհայցուածքն խնդրողի. լիակատար եւ անթերի. ճոխ եւ փարթամ շնորհաւք ի լի. է եւ կատակս նորակի, Ածաշունչ եւ ցանկալի իմաստութեամբ ուրախ լինի, յորպահ ոստեան գետու բղխի, բարեհամ նիւթոյս հա զոկասցի սորա ցանկաց ըղձմամբ սրտի, եւ ստացուհ նահանգն Կարնոյ, ՌՉԱ թըվականի, վերաձայնեալ Սանոս Չաչապի, եւ կենակցոյն իւրոյ ի նմի, որ են տեղեաւ Հալապեցի, նաեւ որդոյն ընթերցողի. Խաճանար Չաչապի վերաձայնի, եւ ծնողացն մահացեալ, որ Ղարախաւզ անուանի. քանզի եւ մայրն է մահացեալ, որ Վարդ խաթունն վերաձայնի, եւ յիշատակ անանցելի, իւր իւրայնոցն ամենայնի, եւ միաբան սրու զարմի, եւ որ փախակէ ողորմայի, փոխեցելոյն ի սար երկրի. ըղձիւ ասցէք Տէրն ողորմի, մայրաքաղաքն ի Բերայի, յայժմիկ Հալապ հաչակեալ լինի. զի եւ ի դուռն Ս. Քառասնի. քանդեալ եղեւ յիշատակ ամենայնի։ Արդ՝ աղաչեմ ընթերցողքդ ամենի, արժան անէք յիշման սրտի։ զոր եւ գտած Տէրն ամենի, ձեզ յիշողացդ ողորմեսցի, մեզ յիշողացդ միաբանի, եւ ամենայն ցանկացողի, պարգեւաւք առատ ողորմեսցի, ձեր պարգեւացն եւ անթերի, տացէ զփառսն անճառելի, ստացողի այսմ վերջի, ամէն եւ է եւ եղիցի. ամէն։ Հայր մեր որ...։ Կրկին աղերսիւ հայցեմ ի ընթերցողացդ յիշել ի տէր (թուղթ պակաս էր)։

2. Թղ. 358ա. (Փարծոցի գլխաւոր յիշատակարանը). Փառք Երից անձանց եւ միում Աստուածութեանն Հաւր անսկզբանն եւ Որդւոյ ծննդեամբ եւ Հոգւոյն բղխմամբ, ի նմանէ սկսեալքս անժամանակաբար այժմ եւ յանդիտենն եւ որ զաւրոյն է յաւիտեանս յաւիտենից ամէն։ Ի թվին ՉԻԳ (=1274). Ես նուաստս յորդիս եկեղեցւոյ եւ յետին ի սպասաւորս բանին Ներսէս ըղձացայ ստացմամբ Աստուածախաւս մատես որ նովաւ եւ որ հոգւով նո-

րա խաւսեցեալք, եւ ըստ յաւժարութեանն սրտիս անձանձիր էի ի ստանալ, իսկ հայրս իմ ըստ հոգւոյ եւ ըստ մարմնոյ արեանառ, մաքրակրաւն Արհիեպիսկոպոս Տէր Յակոբ, ձեռնտու եղեալ մանաւանդ թէ սկիզբն եւ կատարած, ստացայ նովաւ զսա եւ յիմ արդար արդեանց ի վայելումն յանտիս եւ յիշատակ յետ սատեաս ինձ եւ իմոցն պատճառ բարեաց յիշատակի։ Վասն որոյ պատահելոցդ մաղթեմ զխարդ եւ իցէ ոք, սրտի մտաւք յիշել զմեզ ի բարիսն Այ որով եւ դուք յիշատակեսջիք ի նմին։ Բայց գրեցաւ սա ձեռամբ Թորոսի Սարկաւագի ի սուրբ Ուխտս Սեծքար, ի Հայրապետութեան Տեառն Յակոբայ, եւ ի Լեւոնի թագաւորի, յորում բազում երկպառակութիւն եղեւ ի զաւրս, ուստի եւ ոմանք ... եւ մեք մաղթեմք հաստատուն մնալ... ի փառս Քրիստոսի Այ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս ամէն։ Եւ ես եղկելի գրող սորա զարձեալ կրկին աղաչեմ զպատահեալքդ գրոցս յիշման արժանի առնել զերջանիկ հաւրեղբայրն իմ զԹորոս Վանեցի եւ զծնաւղսն իմ, եւ զըստ հոգւոյ եղբայրն իմ զԱւետիք Քանանեայ որ զարդարեալ պայծառացոյց զգիրքս զեղով կարմրով ծաղկաւք եւ գլխագրովք եւ որ աստան է ի սուրբ պարգեւաց ձեզ յիշողացդ եւ մեզ յիշելեացս առ հասարակ ողորմեսցի եւ նմա փառք յա։ Ո՞հ զմեղաւք զատապարտեալ կաղմաւղ սորա զԱռաքել Հեռաքանէեց, եւ զծնաւղսն իմ, եւ զհարազատն իմ զԿարապետ Քանանեայ եւ Պաւղոս Սարկաւագ, եւ զաւտացիչն իմ զՍարգիս Քանանեայ, եւ զեղբաւր որդեակն իմ զԹորոս զհանգուցեալսն ի Քս աղաչեմ յիշել ի Տէր. ՉԻԲ (=1273) կազմեցաւ սա։

> Սեծքար ուխտն՝ Գերմանիկի Պէյթիմաւր? գիւղէն փոքր ինչ հեռի Բերդուս անուանեալ գիւղի մօտիկն էր, եւ շինուած էր Սլեհէ ԺԲ դարու մէջ։ Սոյն հաչակաւոր վանուց վանահայրներէն կը յիշուին Ածատուր Եպս. Յակոբ Եպս. գիտնական մականուանեալ, Գրիգոր Անաւարզացի՝ որ Սեծքարեցի ալ կը կոչուի, Թորոս Վրդ. Բարսեղ վրժպտ եւն։ Սոյն վանքն ԺԷ դարու կիսէն ի վեր ամայացած է։



# 25. (2)

# ԱՒԵՏԱՐԱՆ

## ՈՀԱ. = 1222

ԿԱԶՄ հին աւետարան, տախտակեայ կաշեպատ. ՆԻՒԹ Թուղթ բամբակեայ. ԹԵՐԹՔ 294 կամ 588 էջք. ՄԵԾՈՒԹԻՒՆ 29×21 հարիւրորդամէտր. ԳԻՐ մաքուր բոլորագիր. ԳՐՈՒԹԻՒՆ երկսիւնակ 23,5×15,5 հրդմ. Սիւնակաց միջեւը եղած դատարկ միջոցն է 1 հրդմ. ՏՈՂՔ 19. ՀԱՆԳԱՄԱՆՔ բացի մի քանի տեղերու մաշած Թղթերէն, մնացեալք մաքուր պահուած են. ԽՈՐԱՆՔ Թուով 6. ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ Թուով 196. մի քանի հատ եւս մկրատուած են. ԶԱՐԴԱԳԻՐՔ եւ ԹՌՉՆԱԳԻՐՔ են ամէն գլխոց սկզբնագրերն. եւ ուղղակի տողն ոսկեգիր. ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ Թղ 86բ. 134բ. 218բ. 291ա.—294բ. ԺԱՄԱՆԱԿ գրութեան ՈՀԱ (=1222). ԳԻՐՉ Յովհաննէս Քահանայ. ՏԵՂԻ գրութեան Սիս. ընդ հովանեաւ Ս. Մարինէի Տաճարին. ՏԷՐ. գրիչն՝ եւ ապա այլք որք կը յիշատակին ի յիշատակարանս. ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ. Մատենիս մէջ գտնուած Խորանք, Զարդագիրք եւ Թռչնագիրք երփներանգ են, եւ սոցա ամբողջին վրայ կը փայլին արուեստ. ճաշակ եւ վրձինի փափկութիւն.

**Մասունք է՝ ԱՒԵՏԱՐԱՆ**

1. Թղք. 7ա—86ա. Աւետարան Մատթէոսի.
2. Թղք. 87ա—134ա. Աւետարան Մարկոսի.
3. Թղք. 135ա—218ա. Աւետարան Ղուկասու.
4. Թղք. 219ա—284բ. Աւետարան Յովհաննու.
5. Թղք. 285ա—290բ. Համցիսս Յովհ. Աւետարանչին.

**ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ**

1. Թղ. 27բ. (Մասնիս գրչին ի վերջն Մատթէոսի Աւետարանին). Փառք ամենասուրբ Երրորդութեան Հաւր եւ Որդոյ եւ Հոգոյն Սրբոյ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից ամէն. Որք ընթեռնոյք եւ լուսաւորիք Ածեան Սբ մատենիւս, զաղաչեմ սորա եւ զպրող զՅովանէս ամենամեղ ողի յիշեսջիք ի Քս ո՛վ մանկունք նոր Սիովնի, եւ որք յիշէք եւ զուք յիշեալ լիջիք յաղօթութիւնն Այ, որ է աւրհնեալ յաւիտեանս ամէն. ամէն.

2. Թղ. 144բ. (Մասնիս գրչին ի վերջն Մարկոսի Աւետարանին). Փառք... Սատացաւղ Սբ Աւետարանիս զՅովանէս համբակ Քահանայ յիշել աղաչեմ.

(Այլ գրիչ). Ընդ նմին յիշեցէք զանարժան ծառայս Այ զԲարսեղ Իրէցորդի եւ զհայրն իմ զՎահրամ Քահանայ, եւ զմայրն իմ զՄարիանէ, եւ զեղբարքն իմ զԼեւոն եւ զԳրիգոր եւ զԹորոս, եւ զքոյրքն իմ զԿատամանի եւ զՄնուրովանուշ, եւ զամուսինն իմ զՇահանդուխտ, եւ զդուստրն իմ զՏամայայծ, եւ զամենայն ծնողսն իմ, զի ստացայ զՍբ Աւետարանս ի յարդար ստացուածոց, ի ժամանակին... Նոյ զնաց Հայոց Կաթողիկոսն Տէր Կոս". Դուազրկցին, եւ ես ի յիր ծառայութիւնն, առ Մարայ ուէրն Մէլիք Նասրն, Նոյ ի Հալապ գնեցի զՍբ Աւետարանս ու եկի ի Սիս կազմեցի ի Թվին. ՉՀԲ (=1323). եւ որ զմեզ յիշէ Նոյ խնքն յիշեալ լինի ի Տեառնէ Այ մերմէ. զկազմող սորա զՍտեփաննոս Երէց Երկարենց յիշեցէք ի Տէր.

3. Թղ. 218բ. (Մասնիս գրչին ի վերջն Ղուկասու Աւետարանի). Ո՛վ հրաշափառ եւ երջանիկ երկնաւոր հրեղէն զաւրուն զարմանալի ծագմամբն Հաւր Բանն, հեզ յիս յանարժանս զԹուլութեանց վասս, եւ մի՛ տար Տէր զառ ընդ ծառայի քում որ յամենայնի պարտաւորեցայ, այլ մաղթանաւք մաւր քո Քս, զմեղաց խնաց զլուծն խորտակես, եւ քաւես զիս զյանցաւորս, եւ զանաւոր լումայս եւ նաւր խնրուեցս զոր մատուցանեմ ընդ այրւոյն Քս Ած իմ.

4. Թղք. 291ա—294բ. (Գլխաւոր յիշատակարան). Ի Թուականութեան Հայոց ՈՀԱ (=1222), ի Հայրապետութեան Տ. Կոստանդեայ եւ.... Գրեցաւ Սուրբ եւ կենսակիր Աւետարանս ձեռամբ Յոհաննիսի բազմամեղի ի քաղաքս Սիս, ընդ հովանեաւ Սբ Տաճարիս որ յանուն Սրբուհւոյն Մարինէի, ի դառն եւ յանբարի ժամանակի, որ ի բազմանալ մեղաց մերոց չարեաց անբարկանալին Աստուած ի բարկութիւն ի վերայ աշխարհիս մերոյ ազգի ազգի պատահարաւք եւ ցասմամբ. երբեմն մարախով, երբեմն կարկտիւ, երբեմն սովով եւ մահուամբ, երբեմն անողորմ անձրեւաւք, զի կամ փոկէ բարկութեամբ եւ կամ քանի խստութեամբ, եւ ի վերայ այսր ամենայնի... խորտակեալ զմեզ... զոր յուսամք ի մարդասիրութիւնն Այ ոչ ըստ մեղաց մերոց առնել մեզ, եւ ոչ ըստ անաւրէնութեան հատուցանել. Ի չրջապատութեան Թու. մերոյ ՈԿԸ (= 1219)... Յայսմ ժամանակի եկին ազգք Հոռոմայեցւոց բազում զաւրաւք եւ հեծելաւք

ի քաղաքն Աքախս, և անտի նաւեցան յաշխարհն Եգիպտացւոց հասին ի վերայ քաղաքին որ այժմ կոչի Տիմիատ և պաշարեցին զնա, և անդ կացեալ զամս երկուս առին զքաղաքն, և ի սուր սուսերի մաշեցին զամենեսեան։ Ապա աշխարհաժողով արարեալ ազգն Իսմայէլացւոց եկեալ բանակեցան ընդ դէմ նոցա առաքելով առ նոսա պատգամաւորս, խոստանային ինչս բազումս, դարձուցանել զքաղաքն Ս. Երուսաղէմ, վերստին նորոգմամբ շինուածոյ, վասն զի խապառ կործանեալ էին զնա և զամրոցս նորա, ըստ հրամանի Փրկչին՝ թէ մի մնասցէ այդր քար ի վերայ որ ոչ քակտեսցի... և նոքա ոչ հաւանեալ այսորիկ և ոչ տեղի տուեալ սիրոյ ամենեւին, այլ խստութեամբ և հպարտութեամբ պատասխանեալ զնոսա պարծելով ի զօրս իւրեանց և ի քաջամարտիկ պատերազմողս, եկին ընդ դէմ նոցա ի պատերազմ, և զառաջինն յաղթեցին նոցա և փախստական արարին։ Այլ ազգն Քանանացւոց... հնարեցան վասն նոցա և տեղի տուեալ զամն զնոսա ի կղզի ինչ առ ափն գետոյն մեծի և բացեալ զգնացն ջուրցն՝ քանզի հասեալ էր ժամ եղանելոյ գետոյն յորդուցանելոյ զանզատանս երկրին, և եղեւ այս ի ժամ գիշերի. Իբրեւ եղեւ առաւօտ, էին նոքա ի մէջ ջուրցն, և կացեալ անդ ի մէջ ջրոցն զաւուրս երկուս կամ երիս, բազումք ի նոցանէ մեռանէին սաստկութենէ ջրոցն, և ապա թագաւորն և իշխանքն սկսան կամաւ եկին ի հնազանդութիւն Իսմայէլացւոց, եդին դաշինս երդմամբ և պայման խաղաղութեան և դարձուցին ի նոսա զքաղաքն իւրեանց, և ինքեանք գնացին յիւրաքանչիւր յաշխ իւրեանց։ Եւ այս եղեւ սուգ մեծ Հռովմայեցւոց և ուրախութիւն մեծ Իսմայելացւոց։ Ի սոյն աւուրս եհաս ի լսելիս մեր համբաւ բին խաղաղութեան...։ Արդ՝ ով Քասէր հարք և ծնողգեաց կրաւնաւորք և առաքելագումար դասք Քահանայից յորժամ վայելէք ի քաղցրաճաշակ եդեմատունկ վտակաց քառաստաջեան հոսմանց կենդանական Ածախուս Աւետարանական բանիցս, մանաւանդ յորժամ բանայք զսա ի ժամ սեղանի պատարագին, յորժամ խաղան ի վերուստ յաղթոյն, զաւրք հրեշտակաց, յայնժամ նայիլն Սուրբ Աւետարանաւս և միջնորդական հրաշիւք կենարար Սուրբ Պատարագին, յիշեսջիք զաշխատող սորին զՅոհաննէս բազմամեղ գրիչ յաղութս ձեր, ողորմութիւն գտանել ի Տեառնէ մերմէ Յսէ Քսէ։ Յիշել աղաչեմ և զԲասիլ հայր հոգեւոր զպատուիրականն ի մի Քս, և զԳրիգոր անհաս գրիչ, և զծնաւղսն իմ ըստ մարմնոյ և որք յիշէքդ և դուք յիշեալ լիջիք ի Տէր։

(Այլ գրիչ). Զկաղմող Սբ և կենսակիր Աւետարանիս յիշեսջիք ի Քս զՄովսէս մեղապարտ գծողս և Ած յիշէ զձեզ ամէն. Եւ յիշեսջիք ի Քս զստացող Սբ Աւետարանիս զՅովանէս զՃենողին որդին, և եղբայրն իւր զԿոստընդին, և զմայրն իւր զԸսպիչն, և զիւր կողակիցն զԸսպիչ, և զորդիք նոր է հանգուցեալ առ Քս ամէն։ Եւ որք ընթեռնուք Սբ Աւետարանն կարդալով կամ աւրհնակելով յիշեսջիք ի Քս զՃենողին ազայն զՅովանէսն և զիւր համատար ննջեցեալսն ամէն, և որք յիշէք հայր մեղայիւ և ողորմի ասելով և դուք յիշեալ լիջիք ի Քս ի Սբ Արքայութիւն ամէն։ Կազմեցաւ եայս Սբ Աւետարանս ձեռամբ Մովսէս Քահանայիս ի գիւղն որ կոչի Տումարզայ ըն(դ) հովանեաւ Սբ Ածածնին, ի թվ. Հայոց ՋԿԵ (=1516), և ի բարեպաշտութեան Տն Տէր Յոհաննէս Կաթուղիկոսի, և ի ժամանակ Մուղրան Սկդիմին, և մի ոք իշխեսցէ սայ զրաւելով կամ ծախել, նայ զՅուդայ և զԿայէնի կրէ, և ընդ Քսի Ած, ամէն. եղիցի. եղիցի։

(Այլ գրիչ ևս). Զանարժան և զանպիտան ծառայն Ած զկազմող Սբ Աւետարանիս զմեղապարտ Մչկցի Ածասուր Եպսն և զիւր ննջեցեալքն յիշեցէք առ Քս, թվին ՌԻԸ (= 1579), Յուլիս ամսոյ ԻՁ, Վարդավառի կ(ի)ր(ա)կին վճարեցաւ գիւղաքաղաքն ի Տումարզայ, առ դուռ Սբ Ածածնին, յիշատակ Տէր Վարդանին և իւր ննջեցելոցն, զոր Տէր Ած խաղաղութեամբ վայելել տացէ նոցա, և զինքն ըստ առաջին Սբ Քահանայիցն դասակից և պսակակից արասցէ ամէն ա. ամէն...։

Տումարզայի կամ Թոմարզայի Վանուց Եկեղեցին յանուն Ս. Աստուածածնայ, և Գիւղի եկեղեցին յանուն Ս. Պօղոսի և Պետրոսի է, գիւղէն դուրս, հինգ վայրկեանու հեռի, հին եկեղեցւոյ չէնք մը ևս կայ յանուն Ս. Աձձնայ, որ է ի ձեռս մեր, և որուն վերին երեսը չուրջանակի արձանագրութիւնք կան, լատինական տառերով և լեզուաւ։ Վերջին յիշատակարանի մէջ յիշուած Մչկցի Ածասուր Եպսն նոյն է, թիւ 5 Աւետարանի գլխաւոր յիշատակարանի մէջ յիշուած Ածատուր Եպսի հետ, որ Տումարզայի (Թոմարզայ) վանուց վանահայր կամ Առաջնորդ էր այդ թուականներուն։ Որոշեալ եղած է ժամանակներ որ ի Կեսարիա չորս վանորէից մէջ Առաջնորդք կամ վանահայրք նստած են, ա) ի Ս. Կարապ. բ) ի Ս. Դանիէլ, գ) ի Ս. Գրիգոր Նիւսացւոյ վանս՝ որ ի Ներգէ. դ) և ի Ս. Ածծայ վանս՝ որ ի Տումարզայ։

# ՑՈՒՑԱԿ

# ՀԱՅԵՐԷՆ ՁԵՌԱԳՐԱՑ

## ՍՈՒՐԲ ԳԷՈՐԳ ԵԿԵՂԵՑՒՈՅՆ ԳԸՐՇԷՀԻՐԻ

## Ա.

## ԱՒԵՏԱՐԱՆ

**ՌՃՁ = 1731էն առաջ**

ԿԱԶՄ նոր արեւելեան, Թղթեայ կաշէպատ։ ՆԻՒԹ Թուղթ հաստ ողորկեալ։ ԹԻՒՂԹ 258 կամ 516 էջք։ ՄԵԾՈՒԹԻՒՆ 19×14,5 հարիւրորդամէտր։ ԳԻՐ բոլորագիր, միջին մարմնեայ։ ԳՐՈՒԹԻՒՆ երկսիւնակ 14×10 հրդմ. Սիւնակաց միջեւը եղած դատարկ միջոցն է 3/4 հրդմ։ ՏՈՂՔ 21։ ՀԱՆԳԱՄԱՆՔ մաքուր պահուած է։ ՊԱՏԿԵՐՔ Թուով 4. Թղ. 1ա. 75ա. 125ա. 198ա, բաւական գեղեցիկ գործ են։ ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ Թուով 200։ ԹՌՉՆԱԳԻՐՔ եւ ԶԱՐԴԱԳԻՐՔ են ամէն գլխոց սկզբնագրերն, բաւական ճաշակաւոր, եւ ուղղակի երկու տողերն նոյնպէս ԳԼԽԱԳԻՐՔ կարմրով են։ ԳԱՏԱՐԳ Թղ. 124բ։ ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ գլխաւոր յիշատակարան չունի, բայց սկիզբը եղած դատարկ թղթերու վրայ եւ մանաւորապէս Թղ. 258բ։ ԺԱՄԱՆԱԿ գրութեան ՌՃՁ (=1731) էն առաջ։ ԳԻՐՉ, ՏԷՐ եւ ՏԵՂԻ գրութեան անծանօթ կը մնան։ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՔ, ա) Մատենիս սկիզբն երկու՝ եւ վերջն մի հատ դատարկ թղթեր կան։ բ) Թղ. 258բ. կնիք մը կախուած է, որ կը կարդացուի. «Թի Ծռ. Տր Ովսէփ ՌՃՁԴ»։ Որու տակ թէեւ գրուած մը կար բայց սրբուած լինելուն անընթեռնլի եղած է։

**Մասնեն է՝ ԱՒԵՏԱՐԱՆ։**

1. Թղ. 1ա—74բ. Մատթէոսի Աւետարան. սկիզբն. ԳԻՐՔ ԾՆ. Թռչնագիր, երկու տող եւս գլխագիրք են կարմիր, ինչպէս են նաեւ միւս Աւետարաններունը։

2. Թղ. 75ա—124ա. Մարկոսի Աւետարան. սկիզբն. ՍԿԻԶԲՆ. զարդագիր։

3. Թղ. 125ա—197բ. Ղուկասու Աւետարան. սկիզբն. ՔԱՆԶԻ. Թռչնագիր։

4. Թղ. 198ա—258բ. Յովհաննու Աւետարան. սկիզբն. Ի ՍԿԶԲԱՆԷ. զարդագիր։

**ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ**

1. (Սկիզբն եղած դատարկ թղթի ա երեսին վրայ նօտրագիր գրուած). Այս Սր Աւետարանս Փօղոսեան Յոհաննէսինն է որ է ի Թօմարզացի 1880 Մայիս 5։

2. (Երկրորդ դատարկ թղթի վրայ գրուած է նօտրագիր). Ով եղբարք ի միտ առէք այս Աւետարանիս գրողը որ ինչպէս մարդ է եղեր, տեսէք մեզի որ այսպէս բան մը կրնա՞նք գրենք, Տէր Ած լուսաւորէ հոգին, 1880 Սեպտ. 17. 615 տարի եղեր է։

3. Թղ. 258բ. (Այլ գրիչ նօտրագիր). Յիշատակ է Սր Աւետարանս Տէր Յովսէփին եւ յեղբարցն Յակոբին, եւ Ածատուրին ի քաղաքն Սր յԵրուսաղէմ, ի դուռն Սր Յակոբայ յորոյն յիշատակն օրհնութեամբ եղեւ ՌՃՁ (=1731) ին Մարտի Լ գրեցաւ ի Ղարա քաղաքի։

Թէեւ 2 յիշատակարանն գրողը 1880 Սեպտ. 17ին, Մատենիս գրչութեան թուականն 615 տարի առաջ կը դնի, բայց ո՛րկէ առնելով մեզ անծանօթ կը մնայ. որովհետեւ գլխաւոր յիշատակարանի թերթն մկրատուած էր։

*Թիւ 3 յիշատակարանի մէջ եղած թուականն ալ նոյն յիշատակարանի գրուած օրն կը յայտնէ եւ ոչ թէ մատենիս գրչութեան թուականն, հետեւաբար մեզ թուի թէ, այս Մատեանն ինչպէս նաեւ գրչութեան եւ գրի ձեւերն ես կը ցուցնեն, ժէ դարու վերջերն գրուած գործ մըն է եւ ոչ անկէ առաջ.*

## 2.

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

**ՋՀԵ = 1526**

ԿԱԶՄ ձին արեւելեան. տախտակեայ կաշեպատ. ՆԻՒԹ Թուղթ բամբակեայ ողորկեալ. ԹՈՒՂԹՔ 646 կամ 1292 էջք. ՄԵԾՈՒԹԻՒՆ 37×26 հարիւրորդամէտր. ԳԻՐ բոլորագիր. միջին մարութեամբ. ԳՐՈՒԹԻՒՆ երկսիւնակ 28×19 հրդմ. Սիւնակաց միջեւ եղած պարապ միջոցն է 1 հրդմ. ՏՈՂՔ 33–35. ՀԱՆԳԱՄԱՆՔ շատ մաքուր պահուած չէ. բաւականաչափ թերթեր իրենց տեղերէն խախտած են, թէեւ մասամբ անկորուստ կը մնան այժմ. եւ մասամբ կորուսած են. տեղ տեղ ալ մաշած թղթեր կան. ԽՈՐԱՆՔ Թուով 3. Թղ. 1ա. 27ա. 419ա. Թղ. 1ա. ճանճերծ Խորանու կիսովին պատռուած է. ԿԻՍԱԽՈՐԱՆՔ Թուով 3. Թղ. 51ա. 100բ. 380ա. ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ են ամէն Յայսմաւուրաց սկիզբն. բաւական նախշուն գործ, մեծագոյն մասը մրոտուած է. ԶԱՐԴԱԳԻՐՔ եւ ԹՌՉՆԱԳԻՐՔ են ամէն գլխոց սկզբնագրերն. ՎԵՐՆԱԳԻՐՔ կարմրաւ են. ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ, Թղ. 165ա. 190բ. 196բ. 272բ. 321բ. 360ա. 395բ. 423ա. 500բ. 631ա. 646ա. ԺԱՄԱՆԱԿ գրութեան ՋՀԵ (=1526). ԳՐԻՉ Գաբրիէլ Սարկաւագ Չէթունցի. ՏԵՂԻ գրութեան՝ ի Չէթուն եւ յԵրուսաղէմ. ՏԷՐ Ներսէս եպս Պարոն-Տէր.

**Մատեանս է՝ ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ:**

*Ա. Որոց մէջ կան ամէն սրբոց վկայաբանութիւնք ըստ Տօնացուցի մերոյ. Գլխաւորք հետեւեալ կարգաւ են.*

1. Թղ. 1ա. Ծննդեան Կարապետին. 2. Թղ. 5ա. Վկայաբանութիւն Անիկտոսի և Փոտինոսի. 3. Թղ. 7բ. Տօն է Ճգնակաց Էջմիածնին ի Վաղարշապատ. 4. Թղ. 8բ. Տօն է Փոխման ամենաօրհնեալ Ս. Կուսին Մարիամու. 5. Թղ. 10ա. Տօն է և յիշատակ պատկերին Քրի որ ի Ս. Դաստառակին. 6. Թղ. 19բ. Վկայաբանութիւն Սրց Ատոմեանց. 7. Թղ. 31ա. Վկայաբանութիւն Սրց Սուքիասանց. 8. Թղ. 34բ. Տօն է գլխատման Յովհաննու. 9. Թղ. 37բ. Տօն է Գիւտ Գօտւոյ Ս. Ածածնին. 10. Թղ. 47ա. Տօն է Ծննդեան Ս. Կուսին Յովակիմայ և յԱննայէ. 11. Թղ. 49բ. Յիշատակ վարուց և մահուան Ս. Հայրապետին Սահակայ. 12. Թղ. 166ա. Վկայաբանութիւն Մատթէոսի Աւետարանչին. 13. Թղ. 168բ. Վկայաբանութիւն Փիլիպպոսի Առաքելոյն. 14. Թղ. 170ա. Պատմութիւն Ս. Գրիգորի Լուսաւորչին. 15. Թղ. 177բ. Տօն է ամենասրբուհի Ածածնին, որ երից ամաց ի Տաճարն բերին. 16. Թղ. 212ա. Վկայաբանութիւն Ս. Առաքելոյն Բարդուղիմէոսի. 17. Թղ. 241ա. Վկայաբանութիւն Ս. Թադէոսի Առաքելոյն. 18. Թղ. 251բ. Տօն է Որդւոց Որոտմանց Յովհաննու և Յակոբայ. 19. Թղ. 273բ. Տօն է Ծննդեան և Յայտնութեան Տն մերոյ Յի Քի. 20. Թղ. 324ա. Տօն է Քառասնօրեայ գալստեանն ի Տաճարն Սողոմոնի. 21. Թղ. 418ա. Ս. Զատկին (աբարչութիւն). 22. Թղ. 450բ. Տօն է Աւետեաց Սրբոյ կուսին Մարիամու. 23. Թղ. 501բ. Տօն է Երեւման Ս. Խաչին. 24. Թղ. 513բ. Գիւտ Խաչին յԵրմ. 25. Թղ. 614ա. Տօն է Այլակերպութեան Տեառն. և այլն.

*Բ. Հետեւեալք եւս կան.*

1. Թղ. 4բ. Պատմութիւն Ճիղարայ.

2. Թղ. 69բ. Յիշատակ աւերմանն Անթայ.

3. Թղ. 72ա. Յիշատակ է կատարելոցն Յունաց Թիլին ԲԾԿ (=811).

4. Թղ. 74բ. Յիշատակ վարուց Սրբոյն Յակոբայ Մծբնայ Եպսին.

5. Թղ. 125բ. Նահատակութիւն Սըմբատայ ի ԽԳ (=594).

6. Թղ. 135ա. Ասացեալ Սրբ Վրացն ներբողեան ի պատիւ ամենայն սրբոցն Այ, հնոց և նորոց. Սկիզբն. Կաթուղիկէ Եկեղեցի Սուրբ.

7. Թղ. 149բ. Պատճառ յաղագս երկնայնոց դասուցն թէ որպիսիք են փառաբանութիւնք նոցա, և թէ ոյք են առաջինք միջինք և վերջինք. Սկիզբն. Խոկական էութիւն.

8. Թղ. 166ա. Պատմութիւն պիղծ պատրկին, թէպէտ Թաղաւ յեկեղեցին, այլ այրեցաւ ի գեհենին.

9. Թղ. 180ա. Վարք և յիշատակ Գրիգորի Ակռակոնդացւոյն.

10. Թղ. 187ա. Գիւտ գրոյն Հայոց ի Բալու. Սկիզբն. Ս. Վրդ. Մեսրոպ

11. Թղ. 188ա. Ողբանք... ասացեալ մեծին Մովսէսի քերթողի.

12. Թղ. 236բ. Տեսիլ Սրբն Գրիգորի զոր ետես ի Վաղարշապատ. ատ եղած է հարցումն ընդ հրեշտակին.

13. Թղ. 247ա. Սրբն Եփրեմի Խուրին Ասորւոյ ասացեալ ներբողեան ի Սրբն Ստեփանոս նախավկայն. Սկիզբն. Անդրանիկն Մարտիրոսաց.

14. Թղ. 254ա. Յիշատակ Յովհաննէս Գառնեցոյն.

15. Թղ. 255բ. Խրատ Թաթլոյ առ աշակերտն Թովմա.

16. Թղ. 269ա. Պատճառ Ծրագալուցի Տնօրեան և Յայտնութեան Քի Այ.

Տես նաև բոլոր ութօրայքն.

17. Թղ. 327բ. Եւ ասացեալ բան գովեստի վասն սրբասաց վարուց Մխիթարայ Վարդապետի.

18. Թղ. 358բ. Նահանջի տարին ամիս այս (Փետրուար) իթ պահես մինչ ի զարնանամուտն՝ ար մի յաւելու դու զնահապետացս կարգաց. Սկիզբն. Ի սմին աւուր յիշատակ Սբ Նահապետացն.

19. Թղ. 370բ. Վկայաբանութիւն Սրբն Սմբատայ.

20. Թղ. 389ա. Վկայաբանութիւն Սրբ Գրիգորի Վրացի Բալեցոյ. Սկիզբն. Յամի եաւթն հարիւրէորդ երեսներորդի երրորդի թվին Հայոց.

21. Թղ. 435բ. Սրբոյն Յակոբայ Սրճոյ Եպսին ասացեալ ի Թերահաւատութիւնն Թովմայ. Սկիզբն. Յորժամ յարեաւ հովիւն քաջ.

22. Թղ. 456բ. Պատմութիւն անողորմ Պետրոսին. Սկիզբն. Էր այր մի.

23. Թղ. 464ա. Յիշատակ տեսլեան Սբ Վրդպին Յօհանու Գառնեցոյն. Սկիզբն. Մինչ էի ես ի Հռոմկլայ.

24. Թղ. 466ա. Նահատակութիւն Ս. Սմբատայ.

25. Թղ. 469ա. Վկայութիւն Ս. Սահակ Պարսիկ Վրդպի. Սկիզբն. Սա էր.

26. Թղ. 487ա. Յիշատակ կատարելոցն ի Պարսից յԱսորիս. Սկիզբն. Յորժամ եկ Խոսրով Արքայն.

27. Թղ. 491ա. Յիշատակ Աշոտայ.

28. Թղ. 492ա. Մեծին Եւսեբեայ պատմագրի ասացեալ ի Համբարձումն Քսի. Սկիզբն. Վայելուչ է մեզ.

29. Թղ. 499ա. Յիշատակ Յովփայ Նահատակին. Սկիզբն. Երանելի նահատակն.

30. Թղ. 534ա. Յիշատակ կատարելոցն Թվին ՆԿԷ (=1018). Սկիզբն. Զարթեաւ Աձային.

31. Թղ. 550ա. Յիշատակ վարուց Կիւրակէի և Ուրբաթու. Սկիզբն. Սոքա էին.

32. Թղ. 558բ. Նահատակութիւն Ստեփանոսի Եպսին Սեբաստիոյ. Սկիզբն. Այր ոմն ժամու.

33. Թղ. 562ա. Նահատակութիւն Կաթողիկոսի Աղթամարայ. Սկիզբն. Սրբազան Հայրապետն մեր զՏէր Զաքարիայ.

34. Թղ. 621բ. Վարք և վկայաբանութիւն Սբ հօրն Գրիգորի Վրացի Տերենց որ վերջին ժամանակս զպատմութիւն սրբոցն հաստատեաց. Սկիզբն. Գովել զսուրբն.

35. Թղ. 625բ. Ճառ մը (Սկսուածքն պակաս է բուղթ մը պակսած ըլլալուն) Սկիզբն... Զամենայն ծնունդս Ադամայ.

36. Թղ. 631ա. Ճառ Մաղկազարդի. Սկիզբն. Օրհնեալ է Ած Հայր Տն Մերոյ. Այսօր ուրախացան.

37. Թղ. 614բ. Մեծի աւուրն Յարութեան Քի Այ մերոյ. ասացեալ յԱռաքել Վարդապետէ. Սկիզբն. Իմաստութիւն հաւր, որդի Այ.

Համեմատէ սոյն Մատենան՝ Կեսարիոյ Ս. Աձաձնայ Եկեղեցւոյն ձեռագրական թիւ 7 Ցայտմունքին հետ, երես 52.

ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ

1. Թղ. 165ա. (Վարի լուսանցքը Մասնճիս գրչկճ).

Գաղտոս խաղեաց զՍոփիա,
Ի՛ չար իւր կին զնւփիմայ,
Սղամնու որդով կինն ընդ նմա,
Եւ զանեցաւ ընդ ատամնայ.

2. Թղ. 190բ. (Վարի լուսանցքը Մասնճիս գրչկճ).

Կղեմայ Հայրապետին,
Որ թաղեալ ի մէջ ծովին,
Մանուկն ապրեալ ի կամարին,
Որպէս Մովսէս ի Տապանին.

3. Թղ. 196բ. (Վարի լուսանցքը Մասնճիս գրչկճ).

Կայր ճգնաւոր մի ՚ւ աչքն խոժ,
Երբեմն ունէր ժանիք ու բաժ,
Ճանբայ ունէր մինչ ի Մորաշ,
Ի՛ ամէն բերան տայր նմա փաշ.

4. Թղ. 272բ. (Մասնճիս գրչկճ). Ես Տէր Ներսէս Եպս որ եղի յիշատակ զՍամուելքս ի գեաւղաքաղաքս ի Ցանուս, իմ հոգոյն մի որ իշխեսցէ հանել զՍամուելքս ի Ցանուսու, ոչ Հայրապետ եւ ոչ ուխտի Առաջնորդ, ոչ Քահանայ եւ ոչ Եպիսկոպոս, եւ ոչ աշխարհական, եթէ որ հանտակի, եւ ասէ թէ մերն է իւրն նզովեալ է, եւ անկեալ է ի շնորհացն Այ եւ յիմ կարգանացն նորքեւ է, եւ հնազանդեալքն ուրհնին յԱյ, եւ ի մէնջ ամէն.

5. Թղ. 321բ. (Վարի լուսանցքը՝ Մասնճիս գրչկճ). Ով եղբարք անմեղադիր լերուք աղաչեմ եւ խոշորութեան գրիս, զի կար մեր այս էր, եւ զԱծ ողորմին մի խնայէք մեղաւորիս եւ անպիտանիս Գարրիկ Սարկաւագիս, գիտացիս եղբայր մինչ գայս տեղս, ի Ցարայ Լ. եւ ի Փետրուարի Զ. ի գեւղաքաղաքն ի Ջեթուն գրեցաւ, եւ այն ի Սբ Քաղաքն յԵրուսաղէմ, ի մեծ եւ ի հռչակաւոր Վանքն Հայոց՝ ի դուռն Սրբն Յակոբայ՝ որդւոյն Զեբեդեայ, Տն Եղբաւրն Յակոբայ, եւ գծող սորա յիշեա, եւ ասա թէ Տէր ողորմեա ինձ եւ նորա.

6. Թղ. 360ա — 371բ. (Վարի լուսանցքներն ճեsեւեալ նոտաճաւոր բաճք).

Հիւրասէր ծեր նազելի.
Ձմեռը խաւարն զան ի սեաւ.
Ունէր աման կին մի բարի,
Էր ծծաղկոտ ու՝ տաքինի (1).
Որպէս զգաւն էր անմեղուկ,
Կայր ապանողին առջեւ հեզուկ,
Որդիս ունէր բ. մանուկ,
Մինն էր յիմար միւսն խարուկ (2).
Կարգայ եւ գիտ զաքարինին,
Որ կին էառ զիւր քեռորդին,
Գաւսէմարտեաւ ընդ միշտ էին,
Բայց կարճացաւ ջին ի տեղին.
Գաւսէմարան ճակատուն,
Յաղթահարեալ եղեւ նկուն,
Երեւալ երթայր կաղ կաղ ի տուն
Արջառ ու՝ աչխար իւր խայտալուն (3).
Արեգական նման իշխան,
Եղբարս ունէր իւր մեատասան,
Թէպէտ եկաց չառ ի գնդան,
Շատոց ի տնէն էած սեղան (4).

7. Թղ. 395բ. (Վարի լուսանցքը՝ Մասնճիս գրչկճ). Ով խոհեմ կատարեալ ժամանակաց. ով եղբարք անմեղադիր լերուք, ո՞հ չգիտեմ թէ զի՞նչ փորձանք եղեւ ինձ. Զայս Մաղկազարդի կիրակին կարգայ եւ զգծողս յիշեա.

8. Թղ. 423ա. (Մասնճիս գրչկճ). Ո՜վ եղբարք անմեղադիր լերուք աղաչանաց չեմ գիտեր թէ զի՞նչ եղեւ որ խիստ յիրար կու կպի գիրն, վա՜յ ինձ մեղապարտիս.

9. Թղ. 500բ. (Վարի լուսանցքը՝ ճեsեւեալ նոտաճաւոր բաճք).

Այր մի արդար երեւեցաւ,
Էնչ որ Ած ի նմայ հանգեաւ,
Ցարքայութիւն իւր մեծացաւ,
Բայց չառ ամաւք տառապեցաւ (5).

10. Թղ. 631ա. (Մաղկազարդի ճառէն վերջ). Ցարմարեցաւ ճառս ի վանքս Ղազարու ձեռամբ եղկելի Թշուառական անձին ի

---

Սոյն նոտաճաւոր հանելուկները կը լուծենք ճեsեւեալ կերպիւ. (1) Արտասուք. (2) Խաչ. (3) Ձակոր. (4) Ցախէփ. (5) Ցուր.

Ցաղդաsէ նոտաճաւոր բաճfս, ճոցա ճեs, որ յառաջ բերուած են Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Կայսերական Մատենադարանին ի Վիէննա. Հաւսր Առաջին, Տէր Ա. Տաշեան. Վիէննա, երես 26բ.

թուականիս Հայոց Գ եւ ՀԱ (=1422), արդ յերես անկեալ աղաչեմ յիշման արժանի առնել զանպիտան յարմարող ճառիս զԱռաքել Վրդս եւ զծնողս իմ եւ զեղբարսն ծաղկին Յովանէս։ Այլ եւ զստացող Սբ Գրոյս, զՊարոն-Տէր Ներսէսն եւ զիւր ծնողսն եւ զզծող սորին ամենայն ազգականսն եւ զկարգացող սորին եւ զլսողսն, եւ Ած յիշողացդ եւ յիշեցելոցս առ հասարակ ողորմեսցի։

11. Թղ. 646ա. (Գլխաւոր յիշատակարան). Փառք Ամենասուրբ Երրորդութեանն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ, որ ետ կարողութիւն տկար եւ տարտամ անձին եւ անպիտան գրչի Գաբրիէլի հասանել ցաւարտ գրոցս պիտանի, որ օր ըստ օրէ առկայծէ զոսկերս լուսոյ սորա, պատմութիւն կարծրագոյն սանդղանաց, եւ աքանչելի չնաշխարհիկ վարուց սրբոց որ առ հաւատով կան, որոց սիրտագորի եւ եռափափաք ըղձմամբ սրտի ցանկացաւ ամենայնով եւ պատուական նուէրի եւ չնորհածաւալ եւ սրբասէր Հայրապետն մեր եւ պանծալի Եպսն Տէր Ներսէս Զեթունցի, եւ ստացաւ զսա յիշատակ բարի իւր եւ ծնողաց իւրոց, Հօրն Կիրակոսի Թամամայի եւ մօրն Ծիրանաւորի եւ երից քերցն Հեղինէ, Զայնեցին եւ Երուսիկն եւ մօր քուերն Հաւատոր Եղիսաբէթին եւ Ճանհարին եւ իւր ուստերն Ոսկիին, եւ ամենայն ազգականացն կենդանեաց եւ ննջեցելոց։ Աղաչեմ զամենեսեան որք հանդիպիք սմա տեսութեամբ, կարդալով, օրինակելով յիշեցէք ի Սբ եւ ի մաքրափայլ յաղօթս ձեր, զյառաջ յիշեալ ստացող Սբ Գրոյս զՊարոն-Տէր Ներսէսն եւ զամենայն ազգականս բոլոր սրտիւ եւ լի բերանով Ած ողորմի ասացէք ամէն։ Եւ արդ եւ անպիտան ի բարեաց, մեղաւորս յարգարող, անփոյթ ի գրչաց, անարգս յամենայնի, եւ անպիտանս յեկեղեցիս մտաց յիմարեալ եւ հոգւովս ցնորեալ, բազմամեղ եւ բազմամեղ սուտ անուն Գաբրիէլ Սարկաւագ, կարացեալ մեղօք, ըստ իմում տկար անձամբ անձինս

ասի, եւ Ամենակարող զօրութեամբն Այ կատարեցի, ի Սբ եւ յԱծակիր քաղաքս յԵրուսաղէմ, ընդ հովանեաւ Սբ Տնօրինականացս Քի ի Սբ Ծնունդ ուր Քս ծնաւ, եւ յանդանից մաւր եղաւ, ի Սբ Յորդանանու ուր մկրտեցաւ, ի Սբ Վերնատունն ուր պատարագեցաւ, եւ զոտս աշակերտացն լուաց, եւ ի Սբ Գողգոթայէն ուր Քս խաչեցաւ, եւ ի Սբ Գերեզմանէն ուր Քս թաղեցաւ, եւ ի Սբ Յարութենէն ուր Քս յարեաւ, ի Սբ Համբարձմանէն ուր Քս համբարձաւ, եւ ի Սբ Ածածնի գերեզմանէն, եւ ի դուռն Սբ Առաքելոյն Յակովբայ, որդւոյն Զեբեթեայ, եւ ի յԱթոռն Տեառն Եղբաւրն Յակոբայ, եւ ի Հայրապետութեան Տն Յոհաննէս Կաթուղիկոսի, եւ յառաջնորդութեան Սբ Աթոռիս Տէր Յովսէփին, եւ Սեթերեց?. Հայրապետին ի թվականիս Հայոց Ջ եւ ՀԵ (=1526) ի Տրէ ամսոյ է, եւ Նոյեմբերի ԺԵ, ի մուտն յանեակամաին եղեւ յաւարտումն Սբ Գրոյս, եւ ի թագաւորութեան Սուլթան Սուլեյմանին, եւ արդ յերես անկեալ աղաչեմ զՍրբութիւնդ ձեր Աստուածասէր Սբ հարք իմ եւ եղբարք, որք պատահիք սմա կարդալով եւ աւրինակելով յիշեցէք անմոռաց յիշմամբ յերկնաւորս յաղօթս ձեր զՏէր Ներսէսն եւ զծնողսն իւր եւ զամենայն ազգականսն զորս յառաջն յիշեցաք, եւ ուղիղ սրտիւ եւ ողջամիտ հաւատով Ած ողորմի ասացէք նոցա, ընդ նոսին եւ զանպիտան ծնողսն զԳաբրիէլ Սարկաւագ Զեյթունցին եւ զծնողսն իմ զԿոստանդին եւ զԱսլին եւ հանգուցեալ եղբարքն իմ զՄարգարէն եւ զԱւետիսն, եւ զմեծ տիկինն զՄարիամն եւ հօրեղբարքն իմ զԿարապետն եւ զՑոլակցանն եւ զմեծ հայր եղբարքն իմ զԱսլանբեկն Քանանեանն եւ զՄարգարէ Քանանեանն եւ զԳրիգոր Հայրապետն եւ զՎարդիչն զԿիրակոս Երկցին եւ զամենայն ազգականս իմ եւ զկենդանիս եւ զհանգուցեալս յիշեցէք եւ Ած ողորմի ասացէք եւ Քս Ած ձեզ յիշողացդ եւ մեզ յիշեցելոցս առ հասարակ ողորմեսցի ամէն։



# ՑԱՆԿ

## ՅԱՏՈՒԿ ԱՆՈՒԱՆՑ ՈՄԱՆՑ ՈՐՔ ԳՏԱՆԻՆ Ի ՏԵՏՐԻՍ

*Ուղղութիւնք ըստ բնագրին են. Խաչանիշք իգական անուանք են.*

### Ա.



### Բ.



### Գ.



### Դ.



### Ե.

## Փ.



## Ք.



## Ֆ.



